# ԱՊՐԻԼԻ 12-Ը ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑՈՒԹՅԱՆ ՕՐՆ Է



Տիեզերագնացներ Վ. Ա. Շատալովը և Ա. Գ. Նիկոլաևը Երևանի Վ. Ի. Լենինի անվան հրապարակում ծաղկեպսակ են դնում առաջնորդի հուշարձանի պատվանդանին։

Լուսանկար ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ



# ՊԵՏԵՐԲՈՒՐԳՅԱՆ ՄԻ ԱՌԱՎՈՏ

*ՄՈՎՍԵՍ ՅԱԽՇՈՒՆՑ*

Մի անգամ էր Ալեք քեռին
Տեսել միայն առաջնորդին,
Որ գլխարկը բռնած ձեռին՝
Ողջունում էր ժողովրդին:

Ալեք քեռին զգաց այդ օրն՝
Ակնթարթում երանավետ,
Բավական է տեսնել, լինել
Գեթ մի վայրկյան Լենինի հետ,

Որպեսզի մարդ արիանա,
Լցվի լույսով, հրով անմար՝
Ամբողջ մի մեծ ու անհանգիստ,
Հերոսական կյանքի համար:

Այդ հավատով կռվեց կյանքում
Խավարի դեմ՝ հանուն լույսի,
Զինակոչվեց խղճով մաքուր՝
Հոկտեմբերյան արշալույսին:

Այդ հավատով էլ անզիջող
Անցավ նա իր դժվար ճամփան,
Որ ձգվում էր հրի միջով՝
Կրոնշտադտից մինչ Երևան:

Եվ այն, ինչ որ դարձել է արդ
Ասք ու լեգենդ, երգերի գիրք,
Նրա համար կյանք էր հպարտ
Ու դժվարին ճակատագիր:

Ու սրտի մեջ՝ լայն ու շիտակ,
Նույն այդ պատկերն է լուսահորդ,
Որ ճառագեց այնքան հստակ՝
Պետերբուրգյան մի առավոտ:

*Նկ. ՋԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

# ՏՂԱՆ ՈՐՈՇԵՑ ՆԿԱՐԻՉ ԴԱՌՆԱԼ

ԴԱՎԻԹ ԳԱՍՊԱՐՅԱՆ

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ

Նա վաղուց քաղաք դուրս չէր եկել: Վերջին անգամ, ամռան սկզբին էր, եղբայրն այդ օրը տոխուր էր, իրեն հետը վերցրեց, միասին քաղաք գնացին: Երկար թափառեցին փողոցներում, հետո, երբ հոգնեցին, նստեցին մի սրճարանում: Եղբոր ծանոթները հավաքվեցին: Նրանք սկսեցին կատակել, իսկ հետո գինի էին խմում և խոսում զանազան անհասկանալի բաների մասին: Ինքն այդ օրը ուզածի չափ պաղպաղակ կերավ և քաղցր կարկանդակներ:

Հիմա նա նորից մտածեց գնալ ու թափառել: Եղբայրը արդեն քանի ամիս էր, ինչ ուրիշ քաղաք էր գնացել սովորելու: Որոշեց մենակ գնալ: Հագավ տոնական հագուստները, այն հագուստները, որ ծնողները թույլ էին տալիս միայն հյուր գնալիս հագնել, կապեց եղբոր նվիրած թիթեռնիկաձև փողկապը, մազերը խնամքով հարդարեց հայելու առաջ և թռավ դուրս:

Մինչև կանգառ հասնելը տնտղեց գրպանները: Ընդամենը 50 կոպեկ ուներ: «Հերիք է,— մտածեց նա,— կինո չեմ մտնի»: Որոշեց քայլել այն փողոցներով, որ եղբոր հետ էր անցել: Իջավ ավտոբուսից, ձեռքերը խոթեց գրպանները և ինչ-որ բան սուլելով, մտավ թատրոնի այգին: Անցավ մի խումբ մարդկանց կողքով, որ ֆուտբոլից էին խոսում, քայլերը դանդաղեցրեց, ականջ դրեց: Ինչ խոսում էին՝ ինքը արդեն գիտեր, և նույնիսկ եղբոր հետ գրազ էր բռնել, թե որ թիմը չեմպիոն կդառնա և որ տեղում կմնա «Արարատը»:

Դուրս եկավ փողոց, նայում էր մեծ շենքերին ու մտածում, թե ինչի համար են այդ բոլոր հիմնարկությունները, որոնց վրա բրոնզե տառերով ապակե ցուցանակներ կային փակցված: Փորձեց մի քանիսը կարդալ, բայց գլուխ չհանեց: Ա՜յ, թե եղբայրը հետը լիներ՝ մեկ-մեկ կասեր, կբացատրեր, և նա միանգամից ամեն ինչ կիմանար: Իսկ հիմա՞: Նույնիսկ սկսեց ձանձրանալ, որ մենակ է և սկսեց ավելի բարձրաձայն սուլել և արագացնել քայլերը:

Հասավ կինո «Մոսկվայի» հրապարակը: Այդ հրապարակը լավ գիտեր: Եղբայրը ընկերների հետ միշտ այդտեղ էր ժամադրվում, և մի անգամ, երբ հիվանդ էր, խնդրեց, որ ինքը գնա ժամադրության և ընկերներին տուն բերի: «Լավ տղա է եղբայրս,— մտածեց նա,— շատ ընկերներ ունի և քաղաքում շատերը նրան ճանաչում են»: Իսկ իրեն ոչ ոք դեռ չի ճանաչում, չի բարևում: Գիտեր նաև նկարիչների տունը, մեկ անգամ եղբոր հետ ցուցահանդես էր մտել: Որոշեց այսօր էլ մտնել:

Երբ 10 կոպեկ տվեց մուտքի վճար, հաշվեց, որ մնաց 40 կոպեկ: «Պաղպաղակ կուտեմ և կարկանդակ»,— անցավ մտքով:

Նկարները դուր չէին գալիս, միայն մի քանիսի առաջ երկար կանգ առավ: Մեկի վրա լեռներ էին նկարված ու մի կիսավեր վանք: Դուրս եկավ: Հիշեց, որ իրենց պիոներական ճամբարի մոտ այդպիսի տեղ կար. մեկ անգամ մի մորուքավոր տղա եկավ իրենց ճամբարը և հետո գնաց վանքը նկարելու: Երբ ճաշի ժամանակ իրենք ջոկատով իջնում էին սարից, ինքը հեռվից տեսավ մորուքավոր տղային, որ կռացած կտավի վրա՝ նկարում էր: Երբ փորձեց գաղտնի ծլկել ու գնալ նրա մոտ, ջոկատավարը բարկացավ վրան և ստիպեց շարք կանգնել:

«Գուցե սա հենց այն նկարն է»,— մտածեց տղան և ավելի ուշադիր սկսեց նայել, փորձելով գտնել ճամբարը, անտառի ծանոթ արահետը: Չգտավ: Իսկ կիսավեր վանքն ու մերկ լեռները անչափ նման էին իր տեսածին:

Ու հանկարծ տղան որոշեց, որ ինքը նկարիչ է դառնալու: Ներկապնակն ու թղթերը կվերցնի ու կգնա լեռներ նկարելու: Ու հետո իր աշխատանքներն էլ կկախեն պատերից և մարդիկ երկար կանգ կառնեն նրանց առաջ, ինչպես այս նկարների:

Մյուս նկարները նայելիս, կարծես ոչինչ չէր տեսնում, միայն անընդհատ մտքով նույն բանն էր անցնում, որ ինքը նկարիչ է դառնալու, լեռներ է



Պիոներները ողջունում են ՀԼԿԵՄ XVI համագումարի պատգամավորներին

նկարելու ու կապո՜ւյտ-կապո՜ւյտ երկինք:

Երբ դուրս էր գալիս ցուցասրահից, դռան մոտ կանգնած մի մարդ հարցրեց. «Հը՛, փոքրի՛կ, ինչպե՞ս էր, հավանեցի՞ր»: Ինքը ոչինչ չասաց. ժպտաց, գլխով արեց, թե՝ այո, և ուրախացավ, որ իրեն բանի տեղ են դնում և կարծիք հարցնում:

Դրսում մի պահ ամեն ինչ մոռացավ: 15 կոպեկ տվեց պաղպաղակի և լպստելով բարձրացավ փողոցն ի վեր: Երբ հասավ այն սրճարանին, որտեղ եղբոր հետ նստել էին, ուզեց ներս մտնել: Բայց տեսավ, որ սրճարանը լիքն է մարդկանցով ու այդ մտքից ետ կանգնեց: Թափանցիկ ապակիների միջից նա կրկին զարմանքով նկատեց, որ այդտեղ հավաքվածները առաջվա նման ավելի շատ վիճում են ու խոսում, քան ուտում:

Մնացած փողերով նա կողքի խանութից մի քաղցր կարկանդակ գնեց և ուտելով մտավ այգի: Աշուն էր արդեն, ուշ աշուն: Ամեն ինչ դեղնել էր ու կարմրել: Տղայի մտքում կրկին արթնացավ նկարիչ դառնալու ցանկությունը: Ցուցահանդեսում մի նկար կար՝ դեղին, կարմիր տերևներով և տակն էլ, հիշեց, գրված էր «Աշնանային էտյուդ»: Ի՞նչ կա որ, ինքն էլ կնկարի: Տանը ներկապնակ ունի և նկարչական տետր: Սկզբում տերևներ ու ծաղիկներ կնկարի, իսկ հետո, երբ ամռանը գնա ճամբար, անպայման լեռներ կնկարի ու կապո՜ւյտ-կապո՜ւյտ երկինք:

Սկսեց տերևներ հավաքել: Մի ծառի վրա կարմիր տերևներ կային. ճյուղը կռացրեց, մի փունջ պոկեց: Հետո ծառերի տակից դեղին տերևներ հավաքեց և շուրջ-բոլորը նայելով, գաղտագողի պոկեց մասրենու մի ճյուղ՝ կարմիր ու չորացած պտուղներով: Տղան մտածում էր, որ իր նկարը կանվանի «Աշնանային հեքիաթ» ու կարմիր, դեղին տերևների հետ կնկարի նաև մասրենու ճյուղը:

Երբ տուն վերադառնալու համար նստեց ավտոբուս, հանկարծ մտաբերեց, որ մոտը էլ փող չկա: Ուզեց իջնել, բայց մեքենան շարժվեց: Կուչ եկավ վերջին նստարանի անկյունում և գրկի մեջ համար դասավորեց տերևները: Վախվորած սպասում էր, թե ուր որ է տոմսավաճառը կգա, կբարկանա վրան, որ փող չունի, և գուցե նաև ավտոբուսից իջեցնի: Իսկ տոմսավաճառը նրան նույնիսկ չնկատեց: Իրենց կանգառի մոտ իջավ ավտոբուսի ետևի դռնից ու տերևները ամուր գրկած վազեց դեպի իրենց փողոցը:

Փողոցի ծայրին տեսավ հորը:

— Ո՞ւր էիր կորել,— ասաց հայրը:

Ու տղան հանկարծ հիշեց, որ տանից դուրս գալիս ծնողներին չէր զգուշացրել: Եվ ոչինչ չգտնելով ասելու՝ քթի տակ ցածր քրթմնջաց.

— Հայրի՛կ, ես նկարիչ եմ դառնալու:

Հայրը նայեց նրա փայլփլող աչքերին, գրկի տերևներին և ներողամտաբար ժպտալով ասաց.

— Գնա՛նք:

Այդ օրը տղան երազ տեսավ: Երազում լեռներ էին ու կապո՜ւյտ-կապո՜ւյտ երկինք: Ու ինքը գնում էր դեպի լեռները, կրծքին սեղմած կարմիր, դեղին տերևների մի փունջ ու մասրենու մի ճյուղ՝ կարմիր, չորացած պտուղներով:





# «ԿԵՐԹԱ՞Ս ԿՆԿԱ ԴԵՐ ԽԱՂԱԼՈՒ...»

(«Երկրորդ կյանք» գրքից)

ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ

*Ես չեմ ունեցել անհոգ մանկություն*
*Եվ պատանության երջանիկ օրեր...*

Ն. ԶԱՐՅԱՆ

Իմ պատանությունը Խառակոնիսում զուգադիպեց մի նշանավոր իրադարձության: Մեր դպրոցը որոշել էր պատրաստել Ավետիք Ահարոնյանի «Արցունքի հովիտ» ողբերգության ներկայացումը:

Խառակոնիսն Արշակից ետ էր մնում շատ բաներում: Բայց ուներ նաև արժանիքներ, որոնք «Սուրբ Աստվածածնից» ավելի տեսարժան էին:

Ամենից առաջ խառակոնիսցիք ավելի գրասեր էին և առաջադիմական: Արշակում չկային այնպիսի ուսումնական մարդիկ, ինչպիսին էին մեր գյուղում պարոն Աբրահամը, պարոն Անդրեասը, Պզկի Պողոսը, ռես-Պետրոսը և մանավանդ պարոն Շիրինը, որ վերջին տարիները շարունակ ռես էր ընտրվում:

Բարձրահասակ, թիկնեղ, սև աչքերով, սև, սրածայր բեղերով այս խառակոնիսցին մեծ համբավ և ազդեցություն ուներ ոչ միայն Արշակում, այլև գավառի մյուս կենտրոններում: Ասում էին, Շիրինն անձամբ ծանոթ է նաև կուսակալի և Արամ փաշայի հետ: Իսկ Արշակը չուներ պարոն Շիրինի պես ազդեցիկ մի մարդ:

Մենք հպարտ հիացմունքով էինք նայում, թե ինչպես պարոն Շիրինը, հեծած իր մոխրագույն կաքավող ձին, արշավում էր դեպի Արշակ ու վերադառնում էր Արշակից: Մեզ թվում էր, թե Խառակոնիսը մի գլխով բարձրանում էր ամեն անգամ, երբ մեր պարոն Շիրինը ձի էր հեծնում:

Խառակոնիսից ամեն տարի խմբերով երիտասարդներ էին գնում Բաքու, Թիֆլիս, Ստամբուլ ու վերադառնում էին՝ հետները բերելով ոչ միայն փող ու վատ հիվանդություններ, այլև այդ քաղաքների հոգևոր լույսը: «Արցունքի հովիտ»-ը Խառակոնիսում խաղալու միտքը Բաքվից իր հետ բերել էր պարոն Շիրինի եղբայր Հրանտը, որ այնտեղից վերադարձել էր երկու ամիս առաջ՝ հագնված ինչպես մեր դպրոցի ուսուցիչ պարոն Արամը, միայն գլխին տաճկական կարմիր ֆեսի փոխարեն, ռուսական «շլապկա» դրած:

Ներկայացումը պետք է խաղայինք ժամում, ուր կայանում էին մեր դպրոցական բոլոր հանդեսները: Մեր գյուղի քահանաները ազգային ազատագրության, ուսման ու լուսավորության գործն ընկալում էին իբրև կրոնական ծիսակատարություն և ժամի դահլիճն ու բեմը սիրով տրամադրում էին այդպիսի գործերի համար:

Եվ ահա պարոն Արամի, պարոն Աբրահամի, պարոն Հրանտի, քահանաների մասնակցությամբ կատարվեց դերաբաշխում: Պիեսի գլխավոր հերոսը կին էր՝ Նազի անունով: Նրա դերը պիտի խաղային Բոզոյի Մարանը կամ Հուլեի Յագդուզը, մեր գյուղի ամենասիրուն աղջիկները: Ինձ տվին երկրորդական դերերից մեկը՝ հայդուկ Բաբկենի դերը:

Խոսքեր չեմ գտնում նկարագրելու իմ ուրախությունը: Տասնյակ տարիներ հետո գրած իմ ոտանավորներից մեկում ես ասել եմ. «Ես չեմ ունեցել ...պատանեկության երջանիկ օրեր»: Փչել եմ: Բաբկենի դերն ստանալուց հետո ես ինձ լիակատար երջանիկ էի զգում: Ինձ անչափ դուր էր գալիս անունս՝ Բաբկեն: Սիրտս թունդ էր լինում, երբ որ փորձերի ժամանակ ինձ այդպես էլ կոչում էին. «Բաբկեն, դու պիտի խոսես»... «Բաբկեն, առավոտյան շուտ կգաս փորձի»: Տանն էլ մայրս ու հորաքույր Ալմոն ինձ այդ անունով էին մեծարում. «Մեռնեմ Բաբկենիս»...

Ես ինձ արդեն համարում էի հասունացած պատանի: Այլապես ինձ ո՞նց կտային քաջարի տղամարդու դեր: Ես արդեն Բաբկեն էի և լիակատար երջանիկ:

Բայց, ավա՜ղ, իմ երջանկությունը երկար չտևեց: Խառակոնիսում չգտնվեց մի աղջիկ և ոչ էլ մեծահասակ մի տղա, որ կարողանար Նազեի դերը անգիր սովորել:

Մի օր փորձից առաջ պարոն Արամը, պարոն Աբրահամը, պարոն Հրանտը և քահանաները երկար խորհրդակցելուց հետո որոշեցին Նազեի դերը տալ... ինձ:

Ես իմ կյանքում դրանից ավելի մեծ վիրավորանք չէի կերել: Ինչպե՞ս թե ես պիտի խաղամ կնկա դեր, կնկա շոր հագնեմ ու բարձրանամ բեմ: Դրանից ավելի մեծ անպատվություն ես չէի պատկերացնում: Կտրականապես հրաժարվեցի: Պարոն Արամը, պարոն Աբրահամը, պարոն Հրանտը և քահանաները հերթով ինձ համոզում էին, որ կնկա դեր խաղալու մեջ ոչ մի անպատվություն չկա, որ Խառակոնիսում ոչ ոք չի կարող այդ դերն անգիր սովորել, որ այդպիսի պատիվ ինձ է միայն վիճակված, ուստի ես պետք է ուրախ լինեմ... Չօգնեց: Կնկա դեր խաղալու միտքն անգամ ինձ վիրավորում էր և հանում համբերությունից:

— Եթե դու չհամաձայնես այդ դերը խաղալ,—



բացատրեց պարոն Արամը,— Ներկայացումը գլուխ չի գա և մենք Խառակոնիսի մեջ կխայտառակվենք:

— Ի՞նչ անեմ,— ասացի ես:

— Եթե դու Նազեի դերը չխաղաս,— ասաց պարոն Հրանտը, որին ես անչափ սիրում էի,— քեզ դըպրոցից կհեռացնենք:

— Ես ինքս կհեռանամ դպրոցից, քանի որ ինձ կնկա դեր եք տալիս,— ասացի ես և առանց սպասելու նրանց կարգադրությանը, դպրոցից դուրս եկա:

Աշխարհը մթնել էր իմ գլխին: Բավական չի, որ Բաբկենի դերն ինձանից առել են տվել տերտերի Գեղամին, բավական չի, որ ուզում են ինձ կնիկ դարձնել, դեռ իմ ամենասիրած մարդն էլ՝ պարոն Հրանտը, սպառնում է ինձ հեռացնել դպրոցից: Թող հեռացնեն: Սրանից հետո ինձ ո՛չ դպրոց է հարկավոր, ո՛չ էլ կյանք: Ահա թե ի՞նչ է նշանակում լինել աղքատի զավակ, սրա-նրա դռանը հոտաղ... Տերտերի Գեղամին կհանդգնե՞ն Նազեի դեր տալ: Կամ Կազախի Վարդանին...

Տանը մերոնց պատմեցի գլխիս եկած աղետը:

— Վա՜խ,— ծնկներին խփեց հորաքույր Ալմոն և մղկտաց:— Մեր տունը քանդել են էդ անաստվածները:

Մայրս ինձ գրկեց, կրծքին սեղմեց, ասաց.

— Ամո՞թ Հրանտին: Մորս կողմից էլ ինձ ազգական է գալիս:

— Էլ վարժատուն մի՛ գնա,— սաստիկ վիրավորված բղավեց հայրս:— Ես դրանց...

Ես երեք օր վարժատուն չգնացի:

Չորրորդ օրվա առավոտյան իրար ետևից մեր տունը ժամանեցին պարոն Արամը, պարոն Աբրահամը, պարոն Հրանտը, տեր-Մարտիրոսը և ռես-Պետրոսը: Մայրս խսրի վրա թաղիք փռեց, նրանք նստեցին ծալապատիկ և սկսեցին համոզել, որ ես Նազեի դերը խաղամ: Այդքան թվով պատվավոր մարդկանց մերժելն այնքան էլ հեշտ բան չէր: Բայց ես ու հայրս մնացինք անդրդվելի:

— Եթե իմ տղեն աղքատի տղա չլիներ, էդքան կանպատվեի՞ք նրան,— բղավեց իմ հայրը իր ապրանքի արժեքն իմացող մարդու վիրավորված եղանակով:— Ինչո՞ւ եք տղիս բերնից կարգին տղամարդու խոսքերն առել, կնկա խոսքեր եք տվել:

— Ռե՛ս Եղո,— հաշտարար եղանակով իմ հորը դիմեց ռես-Պետրոսը:— Աստվա՜ծ վկա, դու սխալ ես խոսում: Քո որդուն մենք ոչ թե անպատվել ենք, այլ՝ մեծ պատիվ ենք արել: Միայն քո որդին կարող է խաղալ Նազեի դերը: Խառակոնիսում ուրիշ մարդ չկա, որ էդ խոսքերն անգիր սովորի և էդ մեծ պատվին արժանանա:

— Դու ինձ հավատա՛, ռե՛ս-Եղո,—ասաց պարոն Հրանտը,— Նազեի խոսքերը ոչ թե խոսքեր են, այլ՝ անգին գոհարներ: Այդ գոհարները Խառակոնիսի հասարակությանը կարող է ցույց տալ միայն քո Հայաստանը:

— Դու մի՞թե չես հասկանում, Հայաստա՛ն,— ուղիղ աչքերիս նայելով ասաց պարոն Արամը,— դու մի՞թե չես հասկանում, որ Նազեի դերից հրաժարվելով, դու տապալում ես ներկայացումը, հարված ես տալիս լուսավորության մեծ գործին: Դու մի՞թե այդ հասարակ բանը չես հասկանում:

Ես արդեն փափկել էի ոչ այնքան այդ հասարակ բանը հասկանալով, որքան նրանից, որ հորս անվանեցին ռես-Եղո, և այն էլ՝ երկու անգամ: Ռես մականունով մեծարում էին միայն այն մարդկանց, որոնք ժամանակին ռես էին եղել, և բացառիկ պատվավոր հարուստ մարդկանց: Իմ հերը ոչ ռես էր եղել, ոչ էլ՝ հարուստ: Իսկ եթե նրան գյուղի նշանավոր մարդիկ ռես էին անվանում, ուրեմն շատ մեծ նշանակություն են տալիս իմ խաղին և հորս պատիվն էլ նրանց աչքին շատ է բարձրացել:

Իմ հերն էլ էր փափկել և հարցական նայում էր իմ երեսին: Բայց ես որոշեցի թանկ ծախել ինձ:

— Ախր՝ ես ինչպե՞ս կնիկ դառնամ:

— Կնիկ չես դառնա, որդյակս,— ասաց տեր-Մարտիրոսը:— Կնկա շոր կհագնես, կնկա դեր կխաղաս, հետո կնկա շորերը կհանես, էլի կդառնաս տղամարդ:

Հենց կնկա շոր հագնելուց էր պատռելս գալիս: Ես տերտեր չէի ուզում դառնալ, որ երկար շոր չհագնեի, սրանք ինձ համոզում են, որ կնկա դեր խաղամ: Ասում է էլի, տեր-Մարտիրոսը: Բա ինչի՞ իր Գեղամին կնկա դեր չի տալիս: Տեր-Մարտիրոսը, կարծես իմ միտքը կռահելով, ավելացրեց, որ ինքը շատ ուրախ կլիներ, եթե իր Գեղամը կարողանար անգիր սովորել այդ խոսքերը և ինձ նման զրնգուն ձայն ունենար:

Տեսնելով, որ ես տատանվում եմ, Խառակոնիսի պատվավոր մարդիկ նորից սկսեցին հերթով համոզել ինձ, հորս, մորս և հորաքույր Ալմոյին: Ամենից շուտ համոզվեց մայրս.

— Եղո, էս պատվավոր մարդկանց խաթրը հո չե՞ս կոտրի:

— Չեմ կոտրի, Կարոյի՛ աղջիկ,— պատասխանեց հերս:— Խառակոնիսի ամենապատվավոր մարդիկ եկել են իմ տունը ,ես նրանց հո դատարկ ձեռքով ետ չե՞մ ուղարկի... Ձվածեղ արա:

— Մենք ձվածեղ չենք ուզում, ռե՛ս-Եղո,— ուրախացավ ռես-Պետրոսը:— Մենք որդուդ ենք ուզում:

— Ձվածեղն էլ, որդիս էլ ՝ձեզ մատաղ,— պատասխանեց հայրս և ապա դիմեց ինձ.—Կերթա՞ս կնկա դեր խաղալու:

— Կերթամ,— պատասխանեցի ես:

Խառակոնիսի մեծամեծները խմբով ինձ գովեցին, չեմուչում անելուց հետո ձվածեղը կերան ու վեր կացան: Հայրս ու մայրս այտերս համբուրեցին, հորաքույր Ալմոն ինձ չար աչքից հեռու պահելու համար վրաս թքեց, ու ես պատվավոր պատվիրակների հետ գնացի դպրոց:

Նազեի խոսքերը Ահարոնյանի ողբերգության կեսն էին կազմում: Բայց ես իմ դերն անգիր սովորեցի երեք օրվա ընթացքում: Ինձ համար անգիր սովորելը ամենահեշտ բանն էր աշխարհում:

Մենք պատրաստվում էինք տալ Խառակոնիսի



պատմության մեջ առաջին ներկայացումը, եթե պատարագները չհաշվենք: Այդպես էլ ասաց պարոն Արամը: Ուստի Խառակոնիսցիների հետաքրքրությանը չափ ու սահման չկար: Ամեն քայլափոխի ինձ կանգնեցնում ու հարցնում էին, թե թատրոնը երբ կլինի:

Ներկայացման օրվա առավոտյան ես մորս հետ ընդհարվեցի: Մայրս մատին մատնաշունչ ունենալու պատճառով չէր կարողանում խմոր հունցել, ուստի մեր խմորը հունցելու համար հրավիրել էր հարևանուհուն, որ ականջին գինդեր ուներ: Կանանց գինդերն առհասարակ և այդ կնոջ գինդերը մասնավորապես ինձ անտանելի զզվանք էին պատճառում: Ուստի մորս վրա բարկացա, որ այդ կնոջն է կանչել մեր խմորը հունցելու:

— Ա՛յ տղա, բա ի՞նչ անեի,— բղավեց մայրս,— ինքս հունցել չէի կարող:

— Թող կանչեիր ուրիշ կնիկ, որ ականջին գինդեր չունենար:

— Ա՛յ տղա, գինդն ի՞նչ գեշ բան է:

— Գեշ բան է: Զզվում եմ:

Ես ինքս էլ չէի հասկանում, թե ինչն էր պատճառը, որ ես խորշում էի գինդերից: Մայրս արդեն բոլորովին չէր հասկանում իմ այդ հիվանդությունը: Ուստի կարծում էր, որ ես պարզապես երես եմ առել:

— Ծուռ-ծուռ դուրս մի՛ տա: Հա՛ց կեր ու գնա վարժատուն:

— Չեմ ուտի,— ասացի ես:— Էդ գինդերով կնիկը, որ մեր խմորը հունցում է, ես մեր տան հացը չեմ ուտի:

— Քա տղա՛, ինչո՞ւ,— բարկացավ իմ մայրը:— Հիսո՛ւս Քրիստոս, դրա համար են ասել. «Կարապետը փլավ չի ուտում»:

— Ինչ ասացի՞ր...

— Ինչ որ ասացի, ասացի... ազգով-ցեղով ծուռ եք:

Ես մահացու վերք ստացած գազանի պես դուրս նետվեցի: Ա՛յ թե բանը որտեղ է հասել: Հարազատ մայրս իմ երեսովն է տալիս մեր ընտանիքի հացեին հերյուրված հին ծաղրը. «Կարապետը փլավ չի ուտում»... Շատ լավ, ես էլ քո հացը չեմ ուտի, Կարոյի՛ աղջիկ, ասացի ես մտքումս մորս հացեին: Ես երբեք իմ մորից այդքան խորը չէի վիրավորվել: Նա ինձ հաճախ էր նախատել ամենածանր խոսքերով և մինչև իսկ ամուր դնգսել, նրա ձեռքը չոր էր և ցավագին: Բայց ես այդ բոլորը համարել էի նրա մայրական իրավունքը և չէի վիրավորվել նրանից: Իսկ այսօր նա ինձ անվանեց «ազգով-ցեղով ծուռ»: Իսկ ես նրան անվանեցի «Կարոյի աղջիկ», ինչպես հորաքույր Ալմաստն էր անվանում, երբ ուզում էր մորս ցույց տալ հատուկ սառնություն:

Մի խոսքով, ես մորս հետ ընդհարվեցի և տնից դուրս եկա՝ առանց բերանս բան դնելու: Ամբողջ օրը աղիքներս քաղցից գալարվում էին, բայց ես տուն չէի վերադառնում, որ չհարկադրեն ինձ հաց ուտել: Ես գիտեի, որ սոված մնալս մորս համար ամենամեծ պատիժն է: Ես ինքս տանջվում էի մորս տանջանք պատճառելու համար: Ես շատ էի վիրավորվել: Հապա ի՞նչ է նշանակում «Կարապետը փլավ չի ուտում»:

Երեկոյան բեմ հանելուց առաջ պարոն Արամն ինձ խմացրեց մի սկահակ օղի և երկու հատ հում ձու, որպեսզի ձայնս լավ հնչեր: Ես մեծագույն զզվանքով կնկա շորը հագա, բարձրացա բեմ ու նստեցի օրորոցի մոտ: Իբրև թե երեխայիս եմ օրորում ու երգում.

Քնի՛ր, իմ բալի՛կ, օրո՛ր, ի՛շ արա,
Դու լաց մի՛ լինիր, ես շա՛տ եմ լացել...
Կույր կռունկները սուգ ու շիվանով
Մեր սև երկնքով եկան, անց կացան,
Ա՜խ, մեր լեռներում նրանք կուրացան...
Դու լաց մի՛ լինիր, ես շա՛տ եմ լացել:

Սոված փորի վրա խմած օղին ու ձուն առանց այն էլ իմ մանկական ձայնը դարձրել էին ավելի զիլ ու զրնգուն: Իմ երգած խոսքերի ազդեցության տակ ես ինքս լաց էի լինում և դա իմ ձայնին տալիս էր արտասովոր հուզական ուժ: Եկեղեցու ընդարձակ դահլիճը ծայրեծայր լիքն էր երկսեռ խառակոնիսցիներով: Ով հասցրել էր նստել, ծալապատիկ նստել էր խսիրների վրա, մյուսները կանգնել էին նստածների ետևում, պատերի տակ և դռների մեջ: Նազեի երգը լացացրեց բացարձակապես բոլորին: Ես աչքի պոչով նայում էի և տեսնում, ինչպես արտասուքները կաթում են ռես-Պետրոսի թավ բեղերին և ճրագի լույսի տակ պըլպըլում: Կանայք բարձրաձայն հեկեկում էին՝ բացականչելով.

— Վա՜խ, վա՜խ, վա՜խ...

Երգի հուզախռով խոսքերը, իմ մանկական զիլ ու զնգուն ձայնը, միացած հայ ժողովրդի ազատագրական գաղափարներին, խառակոնիսցիների աչքից արցունքներ էին քամում: Շատերը արցունքի միջից ինձ քաջալերում էին.

— Ջա՜ն, Հայաստա՜ն տղա, կանա՜չ մնա քեզ ծնող մոր մեջքը:

— Ախար Հայաստանս էսօր առավոտվանից բան չի կերել, աչքե՜րս քոռանան,— բացականչեց մայրս դահլիճից:

— Վա՜խ, վա՜խ, վա՜խ,— արձագանքեցին կանայք մորս այդ աղեկտուր բացականչությանը:

Ներկայացումն անցավ արտակարգ հաջողությամբ, կարծես ազգային տոն էր Խառակոնիսում: Ես ռես-Խաչոյի կռվան գոմեշի չափ անուն հանեցի: Մորս հետ հաշտվեցի, և նա ինձ արքայական ընթրիք տալու համար Սուսամբար խաթունից փոխ վերցրեց երեք սպիտակ լավաշ: Գինդավոր հարևանուհու շաղախած հացը ես այդպես էլ չկերա:

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*








# ՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ՖԵԴԵՐԱՑԻԱ

**Սովետական Ռուսաստանը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության օրրանն է, բանվորների ու գյուղացիների՝ աշխարհում առաջին հանրապետությունը: Ռուսաստանի օրինակով և ռուս ժողովրդի եղբայրական օգնությամբ են ցարիզմի լծի տակ տառապող մյուս ժողովուրդները նույնպես թոթափել ստրկության լուծը և գտել իրենց ազատությունը: Սովետական Ռուսաստանը դարձավ այն կորիզը, որի շուրջը համախմբվեցին մյուս սովետական հանրապետությունները և 1922 թ. կազմավորեցին**

# ԿՈՐՆԵՅ

իչ կլինեն գրողներ, որ այնպես կապվեն մանուկների հետ, ինչպես կապված էր Կորնեյ Չուկովսկին: Մանուկների աշխարհը նրա հարազատ աշխարհն էր: Նա, ով եղել է մերձմոսկովյան Պերեդելկինո ավանում, ուր մինչև կյանքի վերջն ապրեց գրողը, հիմա էլ կարող է տեսնել դրա գեղեցիկ վկայությունը. անտառի մեջ, Չուկովսկու առանձնատան կողքին, կա մի սիրունիկ տնակ, պարդարված Չուկովսկու հեքիաթների հերոսների՝ վանավան կենդանիների նկարներով: Դա Չուկովսկու սեփական գրադարանն է՝ նվիրված ավանի երեխաներին:

Չուկովսկին, արդեն խոր ծերության հասած գրող, բարեկամություն էր անում իր ծոռների հասակի երեխաների հետ, ապրում նրանց մանկական հոգսերով, ուրախացնում նրանց, ուրախանում նրանցով: Ահա ինչու, երբ 1970 թվականին, 88 տարեկան հասակում, Չուկովսկին վախճանվեց, ամենից ավելի վշտացան ավանի փոքրիկ բնակիչները:

Բայց որքան ավելի շատ են Չուկովսկու այն փոքրիկ բարեկամները, որ բախտ չունեցան տեսնելու այդ հաղթահասակ, մըշտապես ժպտուն, բարի ծերունուն: Դրանք Չուկովսկու միլիոնավոր ընթերցողներն են ամբողջ աշխարհում, «Բժիշկ Այբոլիտ»-ի և նրա մյուս հրապուրիչ գրվածքների ընթերցողները:

Իր երկար ու ձիգ ստեղծագործական կյանքում Չուկովսկին շատ բան է գրել մանուկների համար, հատկապես՝ չափածո հեքիաթներ: «Իմ մտքով չէր էլ անցնում,— գրել է նա մի առիթով,— թե ինչ-որ ժամանակ այդ հեքիաթները լույս կտեսնեն միլիոնավոր օրինակներով, կվերահրատարակվեն տասնյակ անգամներ և ես կապրեմ այնքան, որ այն երեխաները, որոնց համար դրանք գրվել են, կդառնան ճերմակահեր ծերունիներ և այդ հեքիաթները կկարդան իրենց թոռների ու ծոռների համար»:

Հիմա, երեխանե՛ր, դուք կարդում եք Չուկովսկու մանկական գրվածքները: Հետո, մեծանալով, կանցնեք նրա մյուս գործերին: Դրանցից մեկն էլ «Երկուսից մինչև հինգը» գիրքն է, որ գրված է ամենափոքր երեխաների մասին, բայց ոչ նրանց համար: Այդ գիրքը պատմում է, թե ինչպես են երեխաները խոսել սովորում երկուսից մինչև հինգ տարեկան հասակը: Չուկովսկին դա համարում է վիթխարի աշխատանք, որ կատարում են երեխաները ընդամենը երեք տարում, «հեքիաթային կարճ ժամկետում»,. աշխատանք, որը մարդ ընդունակ է կատարել միայն այդ հասակում: Չէ՞ որ ապացուցված է, որ այդ հասակում խոսել չսովորած երեխան այլևս երբեք չի կարողանում վերականգնել իր ընդունակությունը:

Չուկովսկու գրչին են պատկանում շատ և շատ ուսումնասիրություններ, հուշեր, հոդվածներ մեծ ու նշանավոր գրողների մասին, բոլորն էլ գրված գեղեցիկ ու հրապուրիչ, ինչպես կարող էր միայն նա գրել: Նրա վերջին հոդվածներից մեկը նվիրված էր Հովհաննես Թումանյանին: Այդ հոդվածը, որ հայ մեծ գրողի արժանի գնահատությունն է, լույս տեսավ 1969-ին՝ նրա ծննդյան 100-ամյակի տոնակատարության օրերին:

Ուսանելի է Չուկովսկու ոչ միայն ստեղծագործությունը, այլև կյանքը: Ինքնակենսագրական «Արծաթի գերբը» վիպակում (ո-

ՍՍՀՄ-ը:

Սովետական Ռուսաստանը ՍՍՀՄ-ի կազմի մեջ մտնող եղբայրական հանրապետություններից ամենամեծն է: Արևմուտքից արևելք նա ձգված է 10 հազար կիլոմետր: Երբ նրա մի ծայրում առավոտ է բացվում, մյուսում արդեն գիշեր է: Նա զբաղեցնում է 17 միլիոն քառակուսի կիլոմետր տարածություն, որտեղ ապրում է ավելի քան 130 միլիոն մարդ:

Սովետական Ռուսաստանը սոցիալիստական ֆեդերացիա է: Նրա կազմի մեջ են մտնում 16 ավտոնոմ հանրապետություն, 5 ավտոնոմ մարզ, 10 ազգային օկրուգ: Բացի ռուսներից, որ բնակչության բացարձակ մեծամասնությունն են կազմում՝ ½ մասը, այստեղ ապրում են 100-ից ավելի այլ ժողովուրդներ ու ազգություններ, միավորված իրավահավասարությամբ ու եղբայրությամբ:



# ՉՈՒԿՈՎՍԿԻ

րից մի հատված տպագրվում է ստորև) նա պատմում է, թե ինչ դժվար են անցել իր մանկական ու պատանեկան տարիներն Օդեսայում: Գրքի դրվագներից մեկում նա հիշում է, թե ինչպես պատանի հասակում, լինելով տանիքներ ներկող վարպետի օգնական, անգլերեն է սովորել տանիքների թիթեղին կավիճով անգլերեն բառեր գրելով: Եվ հետագայում այդ պատանին դարձավ անգլիական գրականության լավագույն մասնագետներից մեկը, որին Օքսֆորդի համալսարանը շնորհեց գրականության դոկտորի պատվավոր կոչում:

Ուրիշ շատ հետաքրքիր դրվագներ էլ կան այդ գրքում, որ դուք կիմանաք, եթե կարդաք: Գիրքը հայերեն լույս է տեսել 1963-ին, «Հայաստան» հրատարակչությամբ:

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*Բանասիրական գիտությունների դոկտոր*

# ԼՈՒՍՆԻ ԼՈՒՅՍՈՎ ՈՂՈՂՎԱԾ

*Թվում է, թե երբեք չես տեսել այսքան վիթխարի ու հզոր լուսին: Նա իր տիրապետության տակ է առել ամբողջ քաղաքը, լցրել իր լույսով նման երաժշտության:*

*Իվան Միտրոֆանիչը նստում է տան մոտ, մութ ստվերում, ինչ-որ մայթասալան վրա ու, նորից մոտ քաշելով ինձ, կրկնում է իր թախծալի հանդիմանությունը.*

*— Ախր դու փոքր չես, ժամանակն է, որ հասկանաս:*

*Հետո երկար լռում է ու մեկ էլ հանկարծ վրա բերում.*

*— Դու երբևէ լսե՞լ ես Թոպտիգին Երրորդի մասին:*

*— Ի՞նչ Թոպտիգին:*

*— Հանգուցյալի, «ի տեր հանգյավի» մասին: Ա՛յ, հենց նա է մեղավոր քո դժբախտության համար:*

*«Ի տեր հանգյավ» այն ժամանակ ասում էին Ալեքսանդր 3-րդ թագավորին, նրան, որ մեռել էր երկու տարի առաջ:*

*Հիշում եմ, մեր գիմնազիայում հենց իմացան, որ նա «ի տեր հանգյավ», այսինքն, պարզ ասած մեռավ, Վեցաչքանին, Պրոխոր Եվգենիչն ու քահանան սկսեցին իրարից առաջ ընկնելով, նրան փառաբանել ու այնպե՜ս էին ախ ու վախ անում հոգեհանգստին, այնպե՜ս էին կուրծք ծեծում և այնպե՜ս հաճախ էին կրկնում, թե ինչքան լավն էր նա, իմաստուն, ազնիվ ու բարի, որ մենք՝ երեխաներս, ի վերջո հավատացինք այդ գովեստներին ու սրտանց սկսեցինք մորմոքել մեռած թագավորի համար: Դիմանկարում, որ կախված էր մեր դահլիճում (այժմ այդ շրջանակը սևով էր պատած), նա այնքան միամիտ ու բարեհոգի տեսք ուներ, որ նայելիս մտքովդ չէր անցնի, թե նա ընդունակ է ինչ-որ խարդավանքի:*

*Իսկ իրականում, Իվան Միտրոֆանիչի ասելով, դա մի բիրտ զինվոր էր, «դերժիմորդա»... Իր մինիստրների հետ միասին նա մի դաժան հրաման էր հորինել այսպես կոչված «Խոհարարների երեխաների» մասին, որ*

գիմնազիաներում ոչ մի դեպքում չընդունենն բանվորների, արհեստավորների, կառապանների, աման լվացողների, գործակատարների, կար անողների երեխաներին:

— Բայց թագավորին ի՞նչ օգուտ,— հարցնում եմ ես զարմանքով,— որ մենք բոլորս տգետ մնանք:

Իվան Միտրոֆանիչը չի հասցնում պատասխանել, նրան ընդհատում է Բլոխինը:

— Ասա խնդրեմ,— ասում է նա հեգնանքով,— իսկ թագավորի ինչի՞ն է պետք, որ քեզնից ուսանող դուրս գա: Ի՞նչ օգուտ ունի դրանից: Հարուստները ապստամբություն չեն բարձրացնի, իսկ ով չքավոր է ու այն էլ ստորին դասից՝ օհո-հո՜...

Որոշ բաներ նրա ասածից չեմ հասկանում, բայց գլխավոր մտքերն, այնուամենայնիվ, կարողանում եմ որսալ: Պարզվում է, որ բանն այն չէ արդյո՞ք, ես սովորեցրել եմ Կոզելսկուն հողի մեջ թաղել իր օրագիրը, թե՞ ոչ: Այդ բոլորը նշանակություն չունեցող դատարկ բաներ են: Գլխավորն այն է, որ իմ մայրը չունի այնպիսի տուն, ինչպիսին է «փոխգնդապետ Տյունտինի այրու» տունը, ո՛չ այնպիսի բաղնիքներ ու գինետներ, ինչպես Զունի մայրը, ո՛չ էլ այնպիսի խանութ, ինչպիսին Բաբենչիկով եղբայրներինն է, ո՛չ այնպիսի ռեստորան, ինչպիսին Սիգիզմունդ Կոզելսկունն է,— մայրս ոչինչ չունի, ուրիշի սպիտակեղենը լվանալուց մաշված ձեռքերից բացի: Ուստի և վճռված է ինձ համալսարանական նստարանին մոտ չթողնել:

— Էլ ինչո՞ւ ես նվաստանում, խնդրում, աղաչում, խոնարհվում,— ասում է բարկացած Իվան Միտրոֆանիչը:— Ախր շատ պարզ է ու հասարակ: Վեցաչքանուն կարգադրված է գիմնազիայից վտարել վեց չքավոր երեխայի: Նա էլ մտքում դրել է դուրս շպրտել յոթ հոգու. քեզ, Ֆինկելշտեյնին, Յակովենկոյին, Խրիստոպուլոյին և այն տղաներին՝ վեցերորդ դասարանից: Նա որ պատրվակ կգտնի, անհո՛գ կաց: Նրան հրամայում են, նա էլ ջանք չի խնայում:

Դուրս ենք գալիս նրբանցքից ու քայլում ինչ-որ խանութների, տների, պարտեզների մոտով: Ծանոթ Կանատնայա փողոցը լուսնի լույսի տակ թվում է պոետական, հանելուկային: Բոլոր տները դարձել են անճանաչելի: Կարծես ուրիշ մոլորակի վրա լինենք:

Իվան Միտրոֆանիչը նորից ձեռքը գցում է գոտուս.

— Բայց երկար չեն ծանակի մեզ այդ ճիվաղները...

Աքաղաղներ են կանչում
Մեր սուրբ Ռուսիայում,
Շուտով օրը կբացվի
Մեր սուրբ Ռուսիայում:

Նրա խոսքերը ինձ սիրտ են տալիս: Հերիք է նըվաստանամ ու գլուխս խոնարհեմ: Ես ոչ մեկի առաջ մեղավոր չեմ: Այդպես էլ կասեմ մորս: Ամեն ինչ կբացատրեմ նրան: Այդ նրանք են մեղավոր իմ առաջ և մորս առաջ... Այո՛, այո՛:

Լուսնի երկնագույն լույսը աղաջվա պես ալիք տալով շարժվում է փողոց առ փողոց: Իվան Միտրոֆանիչի զրույցով հափշտակված, չնկատեցի, թե ինչպես մոտեցանք մեր դարբասներին:

— Գնաս բարո՛վ,— ասում է Իվան Միտրոֆանիչը:— Եվ միտդ պահի՛ր. դու իրավազուրկ ես, դու պլեբեյ ես, բայց ոչ ստրուկ:

Հենց ոտքս դարբասից ներս եմ դնում, դեմս է վազում Ցինդիլինդրը: Նա թռչկոտում է, թևերը թափահարում ու խելագարի պես գոռում բակով մեկ.

— Եկա՜վ, եկա՜վ, վերադարձա՜վ, կենդանի՛ է: Իսկի խեղդվելու միտք չի էլ ունեցել:

Եվ ահա, ինձ շրջապատում են և՛ մայրս, և՛ Մարուսյան, և՛ Մալանկան, և՛ Երկար Լիզան, և՛ Ցիլյան՝ աղմկալից ցնծում են վերադարձիս համար:

Կամաց-կամաց սկսում եմ հասկանալ, թե ինչ է կատարվել: Երեկոյան տուն վերադառնալով, մայրս սաստիկ անհանգստանում է, թե ուր եմ կորել: Խոհանոցում տեսնում է այն երկտողը, որով Մունյան ինձ հրավիրում է Դրակոնդիդիի մոտ: Թե դա ինչ Դրակոնդիդի է, ո՛չ մայրս, ո՛չ Մարուսյան չգիտեին: Բայց շուտով գալիս է Ցինդիլինդրը, կարդում երկտողը ու սլանում Ուսպենսկու փողոց (նա մի անգամ չէ, որ եղել էր Դրակոնդիդիի մոտ):

Ինձ այնտեղ չեն գտնում, և մայրիկս ավելի է անհանգստանում, հո չե՞մ խեղդվել ծովում, ինչպես մի քանի օր առաջ խեղդվել էին երկու սեմինարիստ՝ Ֆլուկը և Ժարովը:

Բայց ո՞ւր է Տիմոշան. ո՞ւր է Մունյա Բլոխինը: Ես ուզում եմ հասնել նրանց հետևից, շնորհակալություն հայտնել, բայց Ցինդիլինդրն ինձ՝ բաց չի թողնում: Այժմ, երբ ես ողջ և առողջ վերադարձել եմ, մայրիկս նախ և առաջ կարգադրում է ինձ մի



լավ լվացվել։ Վերցնում եմ օճառը, ճիլոպը և Ցին-դիլինդերի հետ անցնում մոտակա ցախանոցի հե-տևը, և այնտեղ նա սառը ջուր է լցնում վրաս անխնա։ Հետո մայրս փայտե ամանով բորշչ է դնում սեղանին, բայց ես ուժ չունեմ դիպչելու ուտելիքին և, երբ մյուս-ները հեռանում են, սկսում եմ անկապ ու կցկտուր մորս պատմել այն ամենը, ինչ թաքցրել էի նրանից.

— Դու չգիտես... Ազնիվ խոսք եմ տալիս... Այդ ես չեմ... Տյունտինն է... Մեկ էլ Մելետին... ու թագավո-րը... Իվան Միտրոֆանիչն ասում է... դու լսի՛ր....

Մայրս լուռ նայում է ինձ մի տեսակ տարօրինակ ու խաղաղ ժպիտով։ Ամեն ինչից երևում է, որ նա ոչինչ չի կռահում։ Նրա մտքով անգամ չի անցնում, որ երեկ էլ, այսօր էլ, ես խաբել եմ նրան, և՛ այն փո-ղը, որ նա վճարել է գիմնազիայում ուսանելուս հա-մար, և՛ տետրակների, և՛ գրքերի, և՛. բրդոտ կափա-րիչով պայուսակիս, և՛ կլոր պենալի, և՛ այնքան փայ-լուն կոճակներով գիմնազիստական համազգեստի հա-մար, որ չարքաշ աշխատանքով վաստակած այդ ամ-բողջ փողը կորել է անօգուտ, ծախսվել անտեղի, ոնց որ վերցնես ու կրակը գցես։

— Մայրի՛կ, ես պիտի ասեմ քեզ... Վեցաչքանին... երեկ... չէ... երեկ չէ առաջին օրը... ասենք, չէ՛, երե՛կ...

Մայրս շարունակում է լռել։ Եվ հանկարծ արտա-բերում է անխռով.

— Գիտեմ... Վաղուց գիտեմ...

— Գիտե՞ս։

Սիրտս նվաղում է։

— Երեկվանից, առավոտվանից։ Երեկ առավոտ-յան գիմնազիայից թուղթ եկավ... Առավոտը վաղ... Շաբաթ օրը... քեռի Ֆոման էլ այստեղ էր...

Ուրեմն իզուր էի փախչում նրանից, իզուր էի ձե-վանում, իբր թե ոչինչ չի եղել։ Հենց այն ժամանակ, երբ ես նստած եմ եղել դասարանում ու թաքնվել եմ Բլոխինի թիկունքում, նա արդեն իմացել է աղետի մասին։ Բայց ոչ մի խոսք չի ասել ո՛չ քեռի Ֆոմային, ո՛չ Մարուսյային։ Եվ այժմ հանգիստ հանում է խնամ-քով ծալած մի մեծ թուղթ ու մեկնում ինձ։ Սպիտակ, հաստ, փայլուն թղթի վրա ամենագեղեցիկ ձեռագրով գրված է.

«Այսինչ քաղաքի Հինգերորդ Գիմնազիայի ման-կավարժական խորհուրդը հայտնում է Ձեզ, Ողորմած տիրուհի, որ համաձայն այսինչ օրը կայացած խոր-հրդի որոշման, Ձեր որդի, այսինչը հեռացված է վե-րը հիշված Գիմնազիայի հինգերորդ դասարանից՝ ուսման մեջ ետ մնալու և աշակերտների վրա վատ ազդեցություն ունենալու պատճառով։ Բարի եղեք այս-ինչ օրը շնորհ անել Գիմնազիայի գրասենյակ Ձեր հեռացված որդի այսինչի փաստաթղթերն ստանալու։

Ընդունեցեք, Ողորմած Տիրուհի, հարգանացս և նվիրվածությանս լիակատար հավաստիքը։

Դիրեկտոր Ա. Բուրգմեյստեր»։

Այդ թուղթը մորս և ինձ համար մահվան դատա-վճիռ էր, իսկ մայրս (դա այնքան տարօրինակ է) հանգիստ է։ Ինձ ո՛չ շրջմոլիկ է ասում, ո՛չ էլ անբան, ինչպես Մարուսյան սիրում է ասել։ Գոնե ճչար կամ լաց լիներ։ Այդ քարացած վիճակի մեջ ինչ-որ վախեց-նող բան կա։ Ես հափշտակում եմ նրա սառը, ասես մեռած ձեռքերը և հուսակտուր կրկնում.

— Հարկավոր չի՜... Դե՜, խնդրո՜ւմ եմ... Լա՜վ, սիր-տըդ մի՛ կոտրի։ Իվան Միտրոֆանիչը այսօր ինձ բա-ցատրեց։

Ու պատմում եմ այն բոլորը, ինչ քիչ առաջ ինձ ասել էր Իվան Միտրոֆանիչը փողոցում, լուսնի լույ-սի տակ։ Հետո երկուսս էլ լռում ենք ու երկար մնում մեծ թախտին նստած։

Լամպն սկսում է ծխալ ու կամաց-կամաց հանգչել։ Դրանից կարծես ավելի լուսավոր է դառնում մեր շուր-ջը. ամբողջ խոհանոցը ողողվում է լուսնի լույսով։ Մայրս հուզախռով ձայնով, որպիսին երբեք չեմ լսել նրանից, պատմում է իր մասին, իր կյանքի մասին, հորս մասին, որը լքել է նրան Պետերբուրգում իմ աշ-խարհ գալուց քիչ հետո և ի վերջո լռում է։

Նոր եմ նկատում, որ ամբողջ դեմքս թաց է ար-ցունքներից։ Բայց ես ինձ այնքան լավ եմ զգում, որ կարծես աշխարհի երեսին երբեք չեն եղել ո՛չ Մելե-տի, ո՛չ Վեցաչքանի, ո՛չ Պրոշկա, ո՛չ էլ հոգաբար-ձու Լյուստիխ։ Գլուխս դնում եմ մայրիկիս ծնկներին ու, մեղմ շոյելով նրա ձեռքերը, քուն մտնում։

Թարգմ. Ս. ԱՅՈՒՆՑԻ



Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ




ԱՐԿԱԴԻ ԱՐԿԱՆՈՎ

Ուրբաթ օրը թվաբանության դասին կորավ իմ խիղճը: Այդ նախ նկատեց մեր ուսուցչուհի Աննա Իվանովնան: Ես տնային խնդիրն էի արտագրում Կլուբնիչկինի տետրից: Արտագրելու սովորություն ընդհանրապես չունեմ, բայց երեկ հակառակի պես մինչև երեկո ֆուտբոլի խաղով ընկա և չհասցրեցի խնդիրը լուծել:

«Լավ,— մտածեցի,— վաղը մեկնումեկից կարտագրեմ: Մի անգամ կարելի է»:

Ահա այդ խնդիրն էի Կլուբնիչկինից արտագրում: Հանկարծ գլխավերևս լսում եմ Աննա Իվանովնայի ձայնը.

— Պարզվում է, որ Պերիշկինը խղճի կտոր չունի:— Իսկ Պերիշկինը հենց ես եմ որ կամ: Իմ գրիչը անսպասելի ձեռքիցս թռավ ու ծայրը խրրվեց հատակին:

— Այդ ինչպե՞ս,— հարցնում եմ,— խղճի կտոր չունե՞մ:

— Շատ հասարակ,— ասում է Աննա Իվանովնան,— արտագրել միայն կարող է նա, ով կորցրել է խիղճը:

Եվ նա վերցրեց ինձնից տետրս ու պատվիրեց.

— Կգաս վերցնելու միայն այն ժամանակ, երբ կգտնես խիղճդ:

Դուք պատկերացնո՞ւմ եք, թե ինչպես վախեցա: Հաջորդ երկու դասերը բոլորովին չլսեցի, միայն մտածում էի, թե ինչպես պիտի ապրեմ առանց խղճի: Դեռ ե՞րբ էր, որ պապիկս ինձ պատվիրել էր.

— Խիղճը, Սերյո՛ժա, ամե՛ն ինչից ամուր պահիր: Խիղճդ կորցնես՝ կկորչես:

Իսկ պապիկը գիտի, թե ինչ է ասում:

Դպրոցից դուրս եկա բոլորովին շփոթված: Միջանցքում Պաշա մորաքույրը հատակն էր լվանում, ու ես քիչ մնաց նրա դույլը շրջեի:

— Տեսնում է, որ հատակն եմ լվանում,— կանչեց նա իմ ետևից,— կարող էր կողքով անցնել, չէ՛, անպայման թաց տեղով պիտի անցնի, անխիղճ:

«Ինչպե՞ս,— մտածում եմ,— նշանակում է ոչ միայն Աննա Իվանովնան, կարծատես Պաշա մորաքույրը նույնիսկ տեսավ, որ խիղճս կորել է: Նշանակում է գործերս վատ են, տանը հո անմիջապես կնկատեն ու կնկատեն»:

Մի՞թե այդպես իսկույն երևում է, որ ես խիղճ չունեմ:

Չէ՛, տուն գնալ չի կարելի մինչև խիղճս չգտնեմ:

Փոխանակ մեր տուն գնալու, շրջվեցի դեպի Վիտյա Գվարդևենց տուն: Թեև Վիտյան ինձնից մեծ է, բայց իմ մտերիմն է: Ամռանը մենք միևնույն ճամբարում էինք: Միայն թե ես յոթերորդ ջոկատում էի, իսկ նա՝ առաջին: Ես նրան ամեն ինչ պատմեցի:

— Գործերդ վատ են,— ասաց Վիտկան,— պետք է փնտրել ու գտնել: Դու երեկ որտե՞ղ ես ֆուտբոլ խաղացել:

— Բակում,— ասում եմ ես:

— Ահա այնտեղ էլ կսկսենք փնտրել: Գուցե դու պատահաբար այն ցած ես գցել:

Մենք Վիտկայի հետ շրջեցինք ամբողջ բակը, ոչինչ չգտանք: Երրորդ մուտքի մոտ ես մի ողորկ օղ գտա:

— Սա՞ է,— հարցնում եմ Վիտկային:

— Ո՛չ,— ասում է նա,— դա խիղճ չէ, այլ սովորական պնդօղակ է:

— Իսկ խիղճը ի՞նչ տեսք ունի: Դու երբևէ տեսած կա՞ս:

— Ո՛չ:

— Ուրեմն ինչպե՞ս գտնենք: Գոնե իմանայինք ի՞նչ գույնի է:

— Չգիտեմ,— ասում է Վիտկան,— հարկավոր է բակը մաքրողից հարցնել:

Վազեցինք բակը մաքրողի մոտ:

— Չգիտեմ,— ասաց նա,— գուցե երեկ բակում ընկած է եղել, երեկ ֆուտբոլից հետո այնքան արևածաղկի սերմ ավլեցի, գուցե չեմ նկատել ու աղբի հետ դեն եմ նետել:

Ասում է ու աչքերը կկոցում, մեզ չի նայում: Իմ դրությունը դառնում է հուսահատական:

Երկու ժամ Վիտկայի հետ գլուխ ջարդեցինք, չկար ու չկար:

— Իսկ որևէ տեղ խիղճ գնել չի կարելի՞,— հարցնում եմ ես:

— Ո՞վ քեզ խիղճ կծախի:

— Որևէ մեկը:

— Միայն մատնիչը կարող է խիղճը վաճառել:

— Իսկ դու ծանոթ մատնիչ չունե՞ս:

— Ոչ մի հատ:

Եվ հանկարծ մտածեցի. գուցե կա մեկը, որ երկու խիղճ ունի: Այդ «մեկը» կարող է իր մի խիղճը նվիրել կամ ծայրահեղ դեպքում փոխ տալ ինձ, մինչև իմը գտնեմ: Սկսեցի մտածել, թե մեր դասարանից ով երկու խիղճ կունենա: Երևի միայն Չիժիկովը: Նա դասարանում ամենաչաղն է: Վիտկան ասաց, որ խիղճը հեծանիվ չէ և այն չի կարելի փոխ վերցնել քշելու: Չգիտեի, թե էլ ինչ անեմ: Ամբողջ օրը փողոցներում պայուսակը ձեռքիս թափառում էի: Մտածում էի, գուցե հանկարծ գտնեմ: Չէ՞ որ Կլուբնիչկինը մի անգամ մայթի վրա գործելու շյուղեր գտավ: Ես մինչև իսկ բանջարեղենի խանութ մտա և վաճառողին հարցրեցի, թե ունի արդյո՞ք վաճառելու խիղճ: Նա, չգիտեմ ինչու, ասաց, որ ես դուրս կորչեմ և ազնիվ մարդկանց չվիրավորեմ: Ինչո՞վ նրան վիրավորեցի, չհասկացա:

Ժամը յոթին հիշեցի, որ դեռ դասերս չեմ սովորել: Առանց խղճի տուն վերադառնալ չէի կարող: Դրա համար նորից գնացի Վիտկայի մոտ: Սովորեցի ոտանավորը, գրեցի գրավոր վարժությունները, հանեցի խնդրագիրքը և հիշեցի, որ տետրս Աննա Իվանովնայի մոտ է մնացել: Եվ նա ինձ չի վերադարձնի, մինչև խիղճս չգտնեմ... Եվ ինչո՞ւ սկսեցի արտագրել Կլուբնիչկինից: Նորից զգացի, որ կարմրում եմ: Բացեցի խնդրագիրքը ու... Խնդիրն ախր հեշտ էր: Իսկույն լուծեցի: Ահա կգնամ հիմա Աննա Իվանովնայի մոտ և կասեմ, որ խնդիրը ես ինքս էլ լուծեցի: Թող գոնե տետրակս վերադարձնի: Իսկ խիղճս ես կգտնեմ, անպայման կգտնեմ: Լավ էր, Աննա Իվանովնան ուսուցչանոցում էր: Նա երկրորդ՝ հերթից հետո այնտեղ նստած էր:

— Բարի երեկո՜, Պերիշկի՜ն,— ասաց նա,— գտա՞ր խիղճդ:

— Ո՜չ,— ասում եմ:

— Իսկ ինչո՞ւ ես եկել:

— Տետրի եռնից, դասերս պետք է պատրաստեմ:

— Իսկ ինչո՞ւ,— ասաց Աննա Իվանովնան,— վաղը կվերցնես ու Կլուբնիչկինից կարտագրես:

— Կլուբնիչկինից ինչո՞վ եմ պակաս: Ես այդ խնդիրը ինքս էլ լուծեցի, դժվար ոչինչ չկար,— ասում եմ և հանկարծ նորից կարմրում: Ինչո՞ւ եմ այսօր միշտ կարմրում:

— Ինչո՞ւ կարմրեցիր, ամո՞թ է,— հարցնում է Աննա Իվանովնան:

Ես լռում եմ: Նա մեկնում է տետրս:

— Եթե ամաչում ես, նշանակում է խիղճդ վերադառնում է:

Երբ ես տուն հասա, արդեն բոլորովին մութ էր: Ամբողջ ճանապարհին մտածում էի, թե ինչ եմ ասելու տանը: «Կասեմ, որ ջոկատի նիստ էր»,— որոշեցի ես: Բայց հենց տեսա պապիս, որը բացեց դուռը, ես, չգիտես ինչու, ամեն բան պատմեցի նրան այնպես, ինչպես այստեղ գրված է:

Թարգմ. ԶՈՅԱ ԳԵՂԱՄՅԱՆԻ

# ԻՆՁ ԹՎՈՒՄ Է...

ԶՈՅԱ ՏՈՒՄԱՆՈՎԱ

Ինձ թվում է՝ ինչ-որ մի բան կպատահի,
Ի՞նչ... Չգիտեմ: Լուսամուտից ներս կգահի
Մի թուխ թռչուն,
Որ կթևի ժիր ու արագ,
Բայց թռչունն այդ
Ո՜չ ծիծառ է ու ո՜չ սարյակ...
Ի՞նչ է հապա... ի՞նչ իմանամ:
Հավանաբար թևին տվել,
Մի հեռավոր
Մոլորակից է նա չվել:
Եվ այդ մասին առաջինը ես կիմանամ:
Ու ինձ կասեն. «Շնորհ արեք,
Որ կինոյում ձեզ նկարենք»:
Ինձ սուր կտան, ինձ ձի կտան
Եվ ձիու հետ՝ սիրուն մի թամբ,
Մարդիկ գիտեն
Վաղուց արդեն՝
Հայտնի եմ ես իմ քաջությամբ:
Մտածում եմ, որ ինչ-որ բան կպատահի,
Որ ես թռչել կսովորեմ... Առանց ահի
Կսավառնեմ սարերից դեն, ծովերից դեն
Եվ անծանոթ աշխարհները ես կդիտեմ:
Ու թե հանկարծ կոմունիստի
Տանեն դեպի կառափնարան,
Սուրս հանած, թշնամու դեմ
Կկանգնեմ ես անվարան:
Ու թե հարցնի փրկվածը ինձ.
«Ո՞վ ես, եղբա՛յր, և որտեղի՞ց»,
Ես չեմ ասի: Կկանգնեմ
Առանց ահի ու հոգնության,
Որ այս անգամ ուրիշ մարդու
Մեկնեմ ձեռքը իմ օգնության:
Ո՞վ է դրսում
Ինձ սպասում,
Հանկարծակի մեր տան դուռը
Ո՞վ կբախի...
Հավանաբար ինչ-որ մի բան կպատահի,
Հաստատ գիտեմ, ինչ-որ մի բան կպատահի:

Թարգ. ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆԻ

# ՌԻՉՄԱԼ ԿՐՈՄՊՏՈՆ

*Նրա իսկական անունը Ռիչմալ Կրոմպտոն Լամբորն է։ Ծնվել է 1890 թ. Անգլիայի հյուսիսում՝ Լանքաշիր կոմսության Բերի քաղաքում, ուսուցչի ընտանիքում։ Ավարտելով դպրոցը, նա ընդունվում է Լոնդոնի համալսարանը և որոշում ուսուցչուհի դառնալ։ Այդ ժամանակ էլ Կրոմպտոնը սկսում է պատմվածքներ գրել չարաճճի դպրոցական Վիլյամ Բրաունի և նրա ընկերներ Ջինջարի, Դուգլասի, Հենրիի մասին։ Պատմվածքները տպագրվեցին երկու թերթում և մեծ հաջողություն ունեցան։ 1922 թ. լույս տեսավ առաջին գիրքը՝ «Պարզապես Վիլյամը» վերնագրով։ 1923 և 1924 թթ. հրատարակվեցին ևս երեք գիրք։*

*Ծանր հիվանդության պատճառով Ռիչմալ Կրոմպտոնը ստիպված եղավ հրաժարվել ուսուցչությունից և շարունակեց պատմվածքներ գրել Վիլյամի մասին։ Հիսուն տարվա ընթացքում այս շարքից լույս տեսավ 37 գիրք, 9 միլիոն տպաքանակով։ Վիլյամը մշտապես մնաց տասնմեկ տարեկան։*

*Վիլյամի և նրա ընկերների բազմաթիվ արկածները նկարահանել են կինոյում, հաղորդել ռադիոյով, ցուցադրել հեռուստատեսությամբ։*

*Կրոմպտոնը գրել է նաև մոտ 40 վեպ մեծահասակների համար, բայց Վիլյամի մասին գրված նրա պատմվածքները գերազանցում են այդ վեպերի հաջողությանը։*

*Ռիչմալ Կրոմպտոնը մահացել է 1969 թ., 79 տարեկան հասակում։*

*Տպագրում ենք մի հատված «Վիլյամի պատմվածքները» գրքից։*

---

## -եվ

— Այս մարդը անտեսանելի դառնալու հնարը գտավ,— ասաց Վիլյամը։— Տեսակ-տեսակ բաներ իրար խառնեց, մինչև գտավ հնարը և հետո... այսպես անտեսանելի դարձավ ու շատ զվարճալի խաղեր խաղաց։

— Երևի հեքիաթ է,— ասաց ունկնդիրներից մեկը։— Իրական չի։

— Իրական է որ կա,— ասաց Վիլյամը։— Այդ մարդը շատ բաներ իրար խառնեց, գտավ հնարը և անտեսանելի դարձավ։ Ի՞նչ ասես չի պատահի, եթե իրար խառնեն շատ բաներ։ Ի՞նչ իմանաս։ Մարդիկ երբ այսպես խառնում են, հնարում են... գազ, էլեկտրականություն և նման բաներ։

Վիլյամի գիտելիքները շատ մակերեսային էին, բայց, բարեբախտաբար, ունկնդիրները նույն վիճակում էին։

— Շատ բաներ կան, որ մինչև հիմա իրար խառնըված չեն,— շարունակեց Վիլյամը։— Այնպես որ ոչ ոք չգիտի, թե ինչ կստացվի, եթե իրար խառնեն։ Ուրեմն այս մարդը գտավ այնպիսի բաներ, որ իրար խառնված չէին, և անտեսանելիությունը հնարեց։ Գրազ կգամ, որ եթե ես էլ տեսակ-տեսակ բաներ իրար խառնեմ՝ անտեսանելի դառնալու հնարը կգտնեմ։

— Չէ՛, չե՛ս կարող,— հանգիստ ասաց մի թերահավատ։

— Ինչի՞ վրա գրազ գանք,— հարցրեց Վիլյամը։

— Ոչ մի բանի վրա գրազ չեմ գա,— զգուշացավ թերահավատը։— Ես միայն ասում եմ, որ չես կարող։ Անտեսանելի դառնալու հնարը չես կարող գտնել։

— Հա՞, ուրեմն դու այդպե՞ս ես կարծում,— ասաց Վիլյամը։

— Չե՛ս կարող,— ասաց թերահավատը։

Երեխաների խմբի աղմուկից զգացվեց, որ նրանք թերահավատի կողմն են։ Վիլյամն այդ տեսությունը այնքան էլ եռանդով չէր առաջարկել, բայց այժմ իրեն պարտավորված զգաց։

* * *

Գյուղի ցուցադրման օրը երեխաների մի փոքր խումբ հավաքվել էր որոշված վայրում։ Վիլյամը պարծենալու տեղ ուներ. այդ խումբը նախորդից մեծ էր, քանի որ լուրը տարածվել էր չորս կողմ, եկել էին նաև մի քանի հակառակորդներ՝ ցանկանալով տեսնել գյուղի անհաջողությունը։

Խումբը կամաց-կամաց հավաքվում էր։ Անհամբերության և աշխուժության մթնոլորտ էր ստեղծվել։ Գրազ էին գալիս Վիլյամի հաջողության կամ ձախողման վրա։ Թերահավատը հեգնանքով քրթմնջում էր.

— Գազ է հնարել, էլեկտրականություն է հնարել։ Էվերեստ է բարձրացել, Հյուսիսային բևեռ է գնացել։ Ուզում է անտեսանելի դառնալ։ «Լավ ստուգիր»,— ասացի նրան, և չկարողացավ։ Կարծում է, թե աշխարհը ինքն է ստեղծել։

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ՎԻԼՅԱՄԸ



Նկ. ԷԴՎԱՐԴ ԱԲԱՋՅԱՆԻ

Հանկարծ լսվեց Վիլյամի ձայնը. իսկույն բոլորը սսկվեցին:

— Ահա՛, հնարեցի՛: Միայն կոշիկներս չեն անտեսանելի դարձել, որովհետև կաշին չի փոխվում:

Երեխաները բերանները բաց՝ չորս կողմ նայեցին: Ապա նրանցից մեկը հուզված բացականչեց, ցույց տալով խոտերի վրա կանգնած Վիլյամի կոշիկները:

— Նայիր ի՛նձ, Վիլյա՛մ,— հևաց մեկը:— Այստե՞ղ ես:

— Իհա՛րկե, այստեղ եմ,— պատասխանեց Վիլյամի ձայնը:— Շատ չարչարվեցի, բայց վերջապես գտա հնարը: Այժմ անտեսանելի եմ:

Մի փոքրիկ երեխա սկսեց բարձրաձայն լալ: Մեծ քույրը նրան խմբից հեռացրեց: Նորից լռություն տիրեց. անակնկալի և սպասումի լռություն:

— Իս... իսկապե՞ս այստեղ ես, Վիլյա՛մ,— հիացմունքով ասաց մի փոքրիկ աղջիկ:— Ես ասել եմ, որ դու կհնարես, որովհետև միշտ խոստումդ կատարում ես: Իսկապե՞ս այստեղ ես, ոտքերդ կոշիկներիդ մե՞ջ են:

— Այո՛, այստեղ եմ,— ասաց Վիլյամը:

Թերահավատը մոտ գնաց և խփեց կոշիկներից մեկին: Վիլյամը, որ ավելների և եղինջների հետևից նայում էր, համոզիչ մի ճիչ արձակեց:

— Եթե մի անգամ էլ խփես,— ասաց նա զայրույթով,— քեզ ուժեղ քացի կտամ:

Խումբը ակնածալի հեռավորությամբ ետ քաշվեց:

— Ցավե՞ց,— հարցրեց թերահավատը:

— Իհա՛րկե, շա՛տ ցավեց,— ասաց Վիլյամը:— Փորձիր ոտքդ կոխել և տես, թե ինչպես կցավի:

— Բայց չզգացի, թե կոշիկի մեջ ոտք կա,— դեռ լրիվ չհամոզված, ասաց թերահավատը:— Կոշիկը կարծես դատարկ լիներ:

— Պարզ է,—արհամարհանքով ասաց Վիլյամը:— Անտեսանելիությունը դատարկության նման է: Չգիտե՞ր:

— Եթե քեզ խփեմ, կզգա՞ս:

— Ապա փորձի՛ր,— սպառնաց Վիլյամը:— Կտեսնես, թե ինչպես կպատասխանեմ: Անտեսանելիությունը մարդուն տասը անգամ ուժեղ է դարձնում:

Խումբը ավելի ետ քաշվեց: Նորից լռություն տիրեց:

— Ինչպե՞ս հնարեցիր, Վիլյա՛մ,— հիացմունքով ասաց փոքրիկ աղջիկը:

— Չպետք է իմանաք,— պատասխանեց Վիլյամը:— Ամեն մեկը կցանկանա նույնը անել: Այդ դեպքում խառնիխուռն տակնուվրայություն կստեղծվի:

— Եթե ուզես՝ կարո՞ղ ես նորից տեսանելի դառնալ:

— Իհա՛րկե:

— Լա՛վ, հիմա դարձի՛ր,— նորից խոսեց թերահավատը:— Դարձի՛ր, որ տեսնենք:

— Չեմ ուզում:

— Չե՛ս կարող: Անտեսանելի դարձար, բայց չես կարող էլ նախկին տեսքդ ընդունել: Սովից պիտի մեռնես: Ահա՛ թե ինչ:

— Վա՜յ, Վիլյա՛մ,— լաց եղավ փոքրիկ աղջիկը:

— Չեմ մեռնի,— նրան հանգստացրեց Վիլյամը:— Ես գիտեմ նախկին տեսքս ընդունելու հնարը: Լավ փորձել եմ: Երբ ուզենամ՝ կարող եմ տեսանելի կամ անտեսանելի դառնալ: Այնքան արագ կարող եմ փոփոխվել, որ դիտելով՝ կխենթանաս:

— Չէ՛, չե՛մ ուզում տեսնել:

— Քայլի՛ր,— հանկարծ ասաց թերահավատը:— Քայլի՛ր, որ տեսնենք, թե ինչպես են կոշիկներդ շարժվում:

Մի պահ լռությունից հետո՝ Վիլյամն ասաց.

— Չեմ կարող, որովհետև երբ անտեսանելի ես, հնարավոր չէ կոշիկները շարժել: Կարող եմ կոշիկներս հանել և ցատկոտել: Այժմ այդ եմ անում: Գուլպաներ կան հագիս: Ահա, կոշիկներս հագա ու կանգնեցի: Հիմա դարձյալ առանց կոշիկների եմ: Կողքովդ անցա, Ջո՛րջ, մի՞թե չզգացիր:

Ջորջը գունատվեց ու սարսռաց.

# «ԳՐԻՇԱ ՀԱԿՈԲՅԱՆ» ՋԵՐՄԱՆԱՎԸ



*Սովետական Միության պատվերով Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունում կառուցվել է «Գրիշա Հակոբյան» շոգենավը, որն առաջին անգամ օվկիանոս դուրս եկավ 1969 թվականի ապրիլին: Այդ ժամանակից սկսած՝ մեծ բարեկամություն ստեղծվեց Գրիշայի ծննդավայր Կիրովաբադ քաղաքի № 13*

— Հիմա տուն կգնամ և այնտեղ տեսանելի կդառնամ: Կոշիկներս թողնում եմ, որովհետև ծանր են: Մնաք բարով: Վազելով կգնամ:

Վիլյամի ձայնը այնքան համոզիչ էր, որ բոլորի աչքերը դեպի տուն ուղղվեցին. կարծես կարող էին անտեսանելիին հետևել: Երեխաները մի քանի վայրկյան լուռ անշարժ կանգնած մնացին, ապա, կարծես հմայքից ազատված, հարձակվեցին կոշիկների վրա: Ուշադիր քննեցին Վիլյամի անտեսանելի փրկության դուրսն ու ներսը, զգուշությամբ շոշափեցին՝ վախենալով քացի ստանալուց:

— Նայեցե՛ք,— ճչաց աղջիկը:— Կոշիկների վրա կա նրա անունը. «Վ. Բրաուն»: Նայեցե՛ք, կոշիկները նրանն են: Նա այստեղ է եղել: Իսկապես նա անտեսանելի է եղել:

Վիլյամը գուշակելով, որ նրանք, հավանաբար, կսկսեն շրջակայքը հետազոտել, հնարավորին չափ առաջ էր շարժվում նեղ խրամի միջով: Իսկապես, խրամը այնքան նեղ էր, որ հազիվ կարողանում էր շարժվել: Անսպասելիորեն կեղտոտ լճակների հանդիպեց և որովհետև օձի նման սողալով էր շարժվում, դեմքն ու մազերը աստիճանաբար ցեխով ծածկվեցին: Այն պահին էլ, երբ Վիլյամը խրամի անկյունին էր հասել, մի սրամիտ երեխա ձայն տվեց.

— Տեսե՛ք, գուցե նա այստեղ է թաքնված:

Եռանդով սկսեցին խրամը խուզարկել՝ ավելուկի տերևները ետ քաշելով ու գավազաններով խոտը խուզելով:

— Ո՛չ, այստեղ չէ:

— Չի կարող սրա միջով անցնել, շատ նեղ է:

— Եթե այստեղ թաքնված լիներ, հիմա էլ կլիներ, որովհետև դուրս չի եկել:

Վիլյամը արագորեն առաջ էր շարժվում ցեխոտ խրամով: Լսվում էին նախկին ունկնդիրների գրգռված ձայները, որոնք խուզարկում էին իր խորհրդավոր քաջագործության վայրը:

*Անգլ. թարգմ. ՄԻՆԱ ԳՅՈՒՏՅԱՆԻ*

դպրոցի Գրիշա Հակոբյանի անվան պիոներական դրուժինայի պիոներների և հերոսի անունը կրող շոգենավի անձնակազմի միջև: Դրուժինան պատվավոր պիոներ է ընդունել շոգենավի հրամանատար Նիկոլայ Վասիլևիչ Պախովին և կարմիր փողկապ ուղարկել նրան, իսկ ծովայինները փոխարենն ուղարկել են կարմիր մեխակներ, որը պիոներները հանդիսավորությամբ դրել են հերոս պիոների շիրիմին:



Շոգենավի անձնակազմի հրավերով հերոսի եղբայրը՝ ուսուցիչ Վոլոդյա Հակոբյանը տասը օր հյուրընկալվեց շոգենավում, անձնակազմի հետ նավարկության դուրս եկավ Խաղաղ օվկիանոս: Վերադառնալով այդ ուղևորությունից՝ նա դրուժինայի պիոներներին պատմեց իր տպավորությունները շոգենավի, նավաստիների, Խաղաղ օվկիանոսի մասին:

Յուրաքանչյուր հեռավոր նավարկությունից հետո նրանց բարեկամությունը ամրապնդվում է, իսկ հերոս պիոների անունը կրող դրուժինայի պատմությունը հարստանում է ծովայինների ուղարկած հուշերով ու նամակներով:

ՀՈՎԻԿ ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ԽՌՈՎԿԱՆ ԾԱՌԸ

ԹԱԹՈՒԼ ԲՈՒՐՋՅԱՆ

Մի ծառ անտառից
Խռովեց մի օր
Եվ ասաց.— Պիտի ես մենակ ապրեմ:—
Իր ուժին վստահ փեշերն հավաքեց,
Գնաց մերկ ժայռի ուսին բնակվեց:
Եվ դրովհետև մեն ու մենակ էր,
Քամին անարգել նրան հալածեց,
Անձրևը ծեծեց...
Իսկ ծառն այդ հզոր,
Ամո՛ւր, կորավո՛ր,
Դիմացավ եկող այդ հարվածներին,
Հենվելով խորունկ իր արմատներին:
Բայց մեկ օր իրեն նա մենակ զգաց.
Ո՛չ խոսող ուներ,
Ո՛չ լսող ուներ...
Էլ չհամբերեց,
Կարոտով դեպի անտառը ձգվեց:

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

## ՆՈՐԻՑ ԳԱՐՈՒՆ Է

Անցած գարնանն էր: Մուրացանի անվան դպրոցը տոնական տեսք էր առել: Միջանցքների պատերին փակցված էին թռչունների գունավոր նկարներ ու խրտվիլակներ, պատի թերթի հատուկ համարներ, երեխաների զվարթ աղմուկին խառնված էր դեղձանիկների գեղգեղանքը:

Թռչունների պաշտպանության օրն էր, որ ավանդական տոն է դարձել այս դպրոցում: Պատանի բնասերների խմբակի հիմնադրումից հետո, անցած տասը տարիների ընթացքում, դպրոցը պարբերաբար մասնակցել է Լենինյան շրջանում անցկացվող գարնանային տոնահանդեսներին, բազմաթիվ նոր թռչնաբներ ավելացրել Կոմիտասի անվան զբոսայգու ծառերին, բնության պաշտպանության կոմիտեի անդամ է և ստացել է պատվոգրեր: Դպրոցում կազմակերպվել և տոնվել են «Աշակերտական գարունը», «Ծաղկի տոնը» և «Ոսկե աշունը»: Ունեն «Կանաչ պարեկներ», որոնք հետևում են դպրոցամերձ փողոցներում եղած ծառերի ու ծաղիկների խնամքին: Այս ամենի նպատակն է երեխաների մեջ ոչ միայն սեր դաստիարակել բնության և կենդանական աշխարհի նկատմամբ, այլև դարձնել նրանց ակտիվ պաշտպանները:

Պատերին փակցված նկարների մեծ մասի հեղինակները աշակերտներն են, ցուցադրված խրտվիլակներինը՝ նույնպես, որոնցից մեկը պատրաստել է իններորդ դասարանցի Աշոտ Չիչակյանը: Աշոտը նաև որսորդ է, բայց նա որսի է գնում՝ գազաններ և թռչուններ տեսնելու համար: Ահա այստեղ են Խոսրովի անտառում նրա կատարած լուսանկարները: Ուրախալի է, որ դպրոցի բոլոր աշակերտները մեծ ոգևորությամբ մասնակցում են տոնի նախապատրաստական աշխատանքներին:

Տոնական հանդեսն սկսված է:

Սրահում հավաքվել են աշակերտներ, ուսուցիչներ, ծնողներ: Դպրոցի դիրեկտոր Գեյիմ Նիկողոսյանի

բացման խոսքից հետո, տոնը նշանավորվում է վանդակից ազատ արձակված աղավնիներով: Ապա թռչունների, նրանց օգտակարության մասին, զեկուցում է Անահիտ Ադամյանը: Սրահում աշխուժանում են, երբ բեմ են բարձրանում առաջին դասարանցիները (դասվար Ն. Ջալյան): Նրանք արտասանում են հայ բանաստեղծների՝ գարնանը և թռչուններին նվիրված բանաստեղծություններից, երգում են: Այնուհետև «Տարվա եղանակները» ներկայացումով հանդես են գալիս երկրորդ դասարանցիները՝ դասվար Էմմա Հայկազյանի ղեկավարությամբ:

«Կաքավիկը», «Լորիկը» և «Ծիծեռնակը» սրտառուչ են երգում Անուշիկը, Կարինեն և Ռուզաննան: Հուզիչ էր փոքրիկ Նարինեի արտասանությունը՝ «Երգ կռունկի մասին»:

Գնա՛, շրջի՛ր երկրե-երկիր ու ետ դարձիր,
Բարո՜վ դառնաս,
Կանչի՛ր բոլոր պանդուխտներին ու ե՛տ դարձիր,
Բարո՜վ դառնաս,
Դարձիր այնպե՛ս, որ ո՜չ մի տեղ, ո՜չ մի պանդուխտ
Քեզ չսպասի,
«Կռո՛ւնկ, ուստի՞ կուգաս» չասի ու չլացի...

Ելույթ ունեցան նաև երգչախումբը, պարի խումբը: Մինչև երեկո դպրոցի միջանցքներում թևածում էին երգն ու երաժշտությունը:

Այժմ նորից գարուն է: Վերադարձել են պանդուխտ թռչունները: Մուրացանի անվան դպրոցի երեխաների օրինակով գարնան ու թռչունների նոր վերադարձը նշանավորենք մասսայական շքեղ տոնահանդեսներով:

ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑ



**Ճանաչի՛ր հայրենի բնաշխարհը**

# ՄԵՐ ԵՐԿՐԻ ՕՁԵՐԸ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Օձատեսակները շատ չեն Հայաստանում՝ ընդամենը 22 տեսակ: Սակայն եթե նկատի ունենանք, որ մեր փոքրիկ երկրում ապրում են վիթխարածավալ Սովետական Միության օձատեսակների մոտ 40 տոկոսը, այդ հարաբերությամբ կարելի է ասել, որ Հայաստանը, շնորհիվ այն բանի, որ փոքրիկ տարածության վրա կլիմայի և ռելյեֆի զարմանալի բազմազանություն ունի, հարուստ է օձատեսակներով այնպես, ինչպես առհասարակ կենդանական աշխարհի այլ տեսակներով:

Աշխատենք հակիրճ տալ Սովետական Հայաստանի բնության մեջ եղած օձատեսակներից մի քանիսի նկարագիրը:

## ԳՅՈՒՐՋԱ

Սրա տարածման վայրերն են՝ սկսած Արագածի հարավային լանջերի քարքարուտներից, մինչև Վեդի—Նախիջևան—Մեղրի՝ Արաքսի ձախ ափի կիսաանապատային մասերով և, մանավանդ, նախալեռնային շրջանների «ղռերով»: Գյուրզան շատ տարածված է նաև այն վայրերում, ուր ապրում են քարայծերը և հայկական լեռնային ոչխարները: Ես քանի որ ուսումնասիրել եմ քարայծերի և վայրի ոչխարների կյանքը, ուստի իմ շրջագայությունների ընթացքում հաճախ եմ հանդիպել գյուրզայի և բավական մոտիկից ծանոթ եմ նրա վարքին: Նկարագրեմ այդ հանդիպումներից մի քանիսը:

Նոր ենք մտել գարուն, դաշտային դղրոններ եմ փնտրում Ուրծի հարավային լանջերին: Երկարատև անձրևներից հետո պարզ, դուրեկան օր է բացվել: Գյուրզան դուրս է եկել քարի խորը ճեղքից և արևկող արած նիրհում է: Ասենք, դժվար է հասկանալ քնա՞ծ է, թե՞ արթուն, քանի որ աչքերը շարունակ բաց են, նա կոպեր չունի, աչքերը չի թարթում: Իր կոշտ, թեփուկավոր հաստ մարմինը մեկնել է քարի վրայով, տափակ ու ձվաձև գլուխը ծռել հասցրել է պոչին ու այդպես երկուտակված մնացել անշարժ: Տեղումս մեխված նայում եմ: Թիկունքը մուգ մոխրագույն է՝ դարչնագույն երկու շարք բծերով, որոնք ոլորապտույտ շերտ կազմած ձգվում են մեջքի երկարությամբ:

Ի՞նչ ամեհի օձ է... Եթե պոչի վրա տնկվի, գլուխը կհասնի ուսիս: Վաղուց կանգնած եմ մո-

տը, չի շարժվում։ Իզուր չէ, որ ադրբեջանցիները գյուրզային յաթաղան են անվանում, որ նշանակում է՝ քնկոտ։ Իրոք, որքան հանդիպել եմ գյուրզայի, քնած եմ տեսել կամ ինձ նկատելով՝ ծույլ-ծույլ հեռացել է։

Վերջապես սա էլ մի խոշոր, կոշտ թևերով բզեզի մոտենալն զգալով, սթափվեց նիրհից, կլանեց իր զոհին և ինձ նկատելով՝ հեռացավ դեպի իր բույնը։

Այդ ապրիլին էր, երբ գյուրզան ձմռան քնից նոր էր արթնացել և տաքանալու կարիք ուներ։ Ամառվա շոգին նա մեզ գրեթե չի հանդիպում, ննջում է իր զով բնում։ Հաջորդ անգամ մայիսի վերջերին, երբ գնացինք ասածս վայրերը, գյուրզա արդեն շատ քիչ էր պատահում։

Մենք անցանք Սաղարակ գյուղը, թեքվեցինք ձախ և մըտանք մի կիսաանապատ, որ նեղ շերտով ձգվում է մինչև Արփա գետը։

Այստեղ հոգեվարքի մեջ մեկնըված մի սիրուն երինջ տեսանք։ Նա սաստիկ ուռել էր և քթի անցքերից ու բերանից կանաչավուն լորձունք էր թափվում։ Հեռվում անասուններ էին արածում, օդում կրակեցինք, կանչեցինք տավարածներին։

Նրանցից մեկը տեղ հասավ, զննեց դին և գուխը վշտագին տարուբերեց.

— Յաթաղան վուրըբ (գյուրզան է խփել),—եզրակացրեց նա։

— Իսկ փրկել չէ՞ր լինի,— հարցրի ես։

— Ինչո՞ւ չէ։ Երեկ մի կովի խփեց, իսկույն քշեցինք գյուղ, բժիշկը դեղեր սրսկեց, փրկեց։ Ամեն կոլխոզում էլ հիմա բժիշկ կա, օձի թույնի դեմ շիճուկներ կան, հիմա վնասը շատ չի։ Առաջ գյուրզան ամեն ամառ քըսան-քսանհինգ անասուն էր ըսպանում մեր գյուղից։

— Իսկ պատահո՞ւմ է, որ մարդ մեռնի օձի կծելուց։

— Պատահում է։ Էսօր առավոտյան մի սաղարակցու ոտը կծեց, մինչև գյուղ հասցրին՝ մեռավ։

Գյուրզան մեր երկրում ցածրադիր վայրերի բնակիչ է։ Ապրում է ժայռոտ վայրերում, քարքարուտներում, «չնգլներում», չոր «ղոերում», այնպիսի վայրերում, ուր աղքատ է բուսականությունը և կան ուղտափշի, օշինդրի և անապատային այլ բույսերի թփուտներ։ Այդպիսի վայրեր շատ կան Փոքր Կովկասի հարավային թեքություններում, մանավանդ այսպես կոչված «կըրմախքացած լեռներում»։ Լեռների այդ շարքը ձգվում է Արազդայանից դեպի արևելք, այդպիսի լեռներ կան նաև Հայոց ձորում։ Այդ ամայի վայրերում ձորակների մեջ տեղ-տեղ կրաքարային աղբյուրներ են հանդիպում, որոնց ջրերը մի քիչ առաջ գնալով՝ անհետանում են քարերի մեջ, բայց և նրանց ափերին կյանք կա, կանաչ կա, թփուտներ, ծառեր և եղեգներ կան։ Գյուրզայի ամենասիրած վայրերը հենց այդպիսի ձորակներ են, ուր նա դարան է մըտնում և որսում ջրի եկող մանր կաթնասուններին ու թռչուններին։ Ասնու ժայռերի տակ աղբյուր կա, որի մոտ մի անգամ տեսել եմ գյուրզային սրընչակ կոչվող կենդանուն կուլ տալիս։ Հունիս ամսին տեսել եմ դարան մտած գյուրզա Երևան—Աշտարակ տանող ճամփից ոչ հեռու, ցամաքող ջրափոսի մոտ, ուր ամեն առավոտ ջրի էին գալիս դաշտային դոդոններ. նրանց ևս որսում է գյուրզան։ Տեսել եմ կաքավին ողջ-ողջ կուլ տալիս Քանաքեռի դիմաց, Հրազդանի աջ ափի ժայռերում, որ հնուց «Կաքավի գերեզմանատուն» անունն էր կրում, այն պատճառով, որ գյուրզաներն այստեղ շատ կաքավներ էին ոչնչացնում։ Մի անգամ (դա 1965 թ. մայիսի 23-ին էր) Երևանի մոմլաթի գործարանի բանվորները ներկա եղան հետևյալ տեսարանին. գյուրզան սողաց գործարանի պատն ի վեր, հասավ մի նեղքի, անհետացավ նրա մեջ և ապա դուրս եկավ ճնճղուկի ճուտը բերանին։ Իհարկե, իր այդ արարքի համար սողունը պատժվեց. շոֆեր Վոլոդյան կրակեց նրա վրա կոտորակացանով։

Առհասարակ օձերը բուռն ձգտում ունեն դեպի թռչունների բները և այդ բանը գիտեին նաև մեր նախնիք, ուստի և այդ տեսարանները իր ժամանակին պատկերել են մագաղաթի վրա։

Գյուրզան սնվում է նաև մըկնակերպ կրծողներով, որսում է գորտեր, մողեսներ, զանազան թռչուններ, նապաստակի ձագեր։ Երբեմն սնվում է նաև ձըկներով։ Պրոֆ. Լ. Բ. Հարությունյանը այսպիսի դեպք է պատմում.

— Եղեգնաձորի շրջանի Այար գյուղի դիմաց ձուկ էի որսում։ Բռնված ձուկը կարթից ազատում և գցում էի ձկնորսական մետաղյա զամբյուղիս մեջ, որի միջից, ինչպես գիտեք, բռնված ձուկը դուրս գալ չի կարող։ Զամբյուղը դրել էի ծանծաղ ջըրափոսի մեջ, իսկ աչքս կարթի կողմն էր։ Հանկարծ սարսափով տեսա, որ զամբյուղի մեջ, բըռնածս ձկների փոխարեն գյուրզա օձեր են խլվլում. նրանք կուլ էին տվել ձկներին, տոզել էին և հիմա պատեպատ էին դիպչում, որ դուրս գան, բայց չէին կարողանում։

Հոկտեմբեր ամսին գյուրզան մտնում է մկնակերպ կրծողներից մեկնումեկի պատրաստի բույնը և ձմեռում է այնտեղ՝ առանց սնունդ ընդունելու, թմրած վիճակում։

Գյուրզան ձու չի ածում, նա կենդանածին է։ Օգոստոս-սեպտեմբեր ամիսներին ծնում է 10—15 ձագ։




## ՍՏԱԽՈՍՆԵՐԻ ԱՇԽԱՐՀԻ ՉԵՄՊԻՈՆԸ

ԱՄՆ-ի Բերլինգտոն քաղաքի ստախոսների ակումբը հայտնեց, որ ստախոսների աշխարհի չեմպիոնի կոչումը շնորհվել է ոմն պարոն Հաուլետի։ Նա կրծքանշան ստացավ, որի վրա գրված էր. «Առանց կարմրելու ստում եմ»։ Ակումբի կանոնադրության համաձայն, Հաուլետը այդ կրծքանշանը պետք է կրի մի տարի՝ մինչև նոր չեմպիոնի հայտնի դառնալը։ Ակումբին ուղղված իր նամակում Հաուլետը խնդրում էր, որ թույլ տան կրծքանշանը գոնե աշխատանքի ժամանակ հանել, քանի որ ինքը... քահանա է։



# ՎԵՆԵՐԱ

Արևից հետո Վեներան ամենապայծառ երկնային լուսատուն է Արեգակնային համակարգի մեջ։ Քանի որ նրան կարելի է տեսնել և վաղ առավոտյան, և երեկոյան, հին ժամանակներում թյուրիմացաբար կարծում էին, թե դրանք երկու տարբեր աստղեր են։ Առաջին անգամ Գալիլեյը 1610 թ. Լուսնի փուլերի նմանությամբ, նկարագրեց Վեներայի փուլերի հաջորդական փոփոխությունները, իսկ 1761 թ. Լոմոնոսովը հայտնագործեց նրա մթնոլորտը։

Վեներայի և Երկրի նմանության, իրար մոտ դիրքի պատճառով, նրանց անվանում են «Երկվորյակ մոլորակներ»։ Եթե Երկրի չափերն ընդունենք մեկ միավոր, ապա Վեներայի տրամագիծը կլինի 0,973, ծավալը՝ 0,92, խտությունը՝ 0,88, մասսան՝ 0,81։ Այնուհանդերձ, Վեներան քիչ է ուսումնասիրված։ Հայտնի է, որ նա Արևի շուրջը պտտվում է 108 միլիոն կմ. միջին հեռավորության վրա՝ վայրկյանում շարժվելով 35 կմ. արագությամբ, և մի լրիվ պտույտ է կատարում 225 օրում։ Անթափանց ամպերով հագեցած Վեներայի գազե պատվարը մեծ արգելք է հանդիսանում դիտումների համար։ Մինչև վերջերս անհայտ էր նրա շուրջը եղած մթնոլորտի կազմությունը, ամպերի քիմիական բաղադրությունը, ջերմաստիճանը և ճնշումը։

1962 թ. ռադիոլոկացիոն դիտումներն ու հաշվումները ցույց տվեցին, որ Վեներան իր առանցքի շուրջը պտտվում է 250 օրում, այսինքն՝ Մերկուրիի նման, նրա օրը նույնպես երկար է իր տարվանից։ Մթնոլորտի մասին հարուստ տեղեկություններ հաղորդեց սովետական «Վեներա—4» միջմոլորակային ավտոմատ կայանը, որը 1967 թ. հոկտեմբերի 17-ին իջավ երկվորյակ մոլորակի վրա։ Պարզվեց, որ գազե պատվարը հիմնականում կազմված է ածխածնի երկօքսիդից (93—97 տոկոս)։ Կա նաև թթվածին (0,1 տոկոս), ջրային գոլորշիներ (0,05 տոկոս), ազոտ և իներտ գազեր (2—5 տոկոս)։ Վեներայի վրա կա մագնիսական դաշտ։ «Վեներա—5»-ի և «Վեներա—6»-ի շնորհիվ որոշվեց նաև մոլորակի միջին ջերմաստիճանը՝ +500°C, և ճնշումը՝ 100—200 մթնոլորտ։ Հայտնի դարձավ նաև, որ Վեներայի վրա 14 կմ. բարձրությամբ լեռները քիչ չեն։

Գիտության հերթական խնդիրներն են՝ ուսումնասիրել Վեներայի մթնոլորտում եղած հոսանքները, մակերևույթը և կազմել ամբողջական ու ճշգրիտ քարտեզ։ Այս հարցերին երևի պատասխան կտա սովետական նոր ավտոմատ կայանը, որը 1970 թ. դեկտեմբերի 17-ին բարեհաջող վայրէջք կատարեց Վեներայի վրա։

## «Ուշադիր ընթերցողների մրցույթը» շարունակվում է

1. «Իմ գործունեությունը ավելի հաջող էր նկարչական սեկցիայում»։

Ո՞վ է այս հուշերի հեղինակը, և ի՞նչ դեպքերի մասին է գրում նա։

2. «Քաղաքի նույն այդ դարբասների մոտ նշանակվեցին մարդիկ, որոնք հետևում էին...»

Շարունակեցեք այս նախադասությունը։ Ի՞նչ է ուզում ասել հեղինակը այս նյութում։

3. «Ես չգիտեմ, թե ինչու է պապիկը դժգոհ, որ հայրիկը ինձ ուզում է ռոբոտ դարձնել։ Ես միշտ էլ նախանձել եմ ռոբոտներին»։

Իսկապես, ինչո՞ւ էր պապիկը դժգոհ։ Ո՞վ է այս պատմվածքի հեղինակը։

4. «Ամեն ինչից երևում է հոգատար, բնության լեզուն հասկացող հմուտ ձեռքերի կատարած գործը»։

Ո՞ւմ մասին է խոսքը, ի՞նչ գործ են կատարել նրանք։

# ԳԻԳԱՆՏ ԾԱՌԵՐ

*Երկրագնդի ամենախոշոր ծառերը ավստրալիական էվկալիպտներն են, որոնց բարձրությունը հաճախ հասնում է 150 մետրի։*

*Դրանք աճում են խոնավ, ճահճոտ հողերում։ Մեծ քանակությամբ ջուր գոլորշիացնելու շնորհիվ էվկալիպտները երբեմն չորացնում են ճահիճները, որի հետևանքով ստացել են «կենդանի պոմպ» անվանումը։ Էվկալիպտների միջոցով չորացվել են Կոլխիդայի ճահիճները։*

*Մի ուրիշ զարմանալի հատկություն ևս ունի էվկալիպտը. նրա տերևները արեգակի ճառագայթների նկատմամբ թեք դիրք են գրավում, որի հետևանքով ծառը համարյա ստվեր չի առաջացնում և հողի մակերեսը տաքանում է այնպես, ինչպես բաց տարածություններում։*

*Եթե այս բոլորին ավելացնենք նաև այն, որ էվկալիպտի բնափայտը խիստ ամուր է և արժեքավոր,*



*իսկ տերևները օգտագործվում են բժշկության մեջ, զանազան կարևոր դեղեր պատրաստելու համար, ապա միանգամայն պարզ կդառնա այս ծառատեսակի խիստ կարևոր նշանակությունը։*

*Աշխարհի գիգանտ ծառերի թվին է պատկանում նաև կալիֆոռնիական սեկվոյան, որն ապրում է մինչև 6000 տարի և նույնպես հասնում է 150 մետր բարձրության։*

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
**Կենսաբանական գիտությունների դոկտոր**



## ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ

**Խնդրում ենք գրել, թե այս համարի նյութերից որը ձեզ դուր եկավ և ինչի մասին կուզենայիք կարդալ հաջորդ համարներում:**

**«ՊԻՈՆԵՐԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ**


Լույս է տեսնում 1923 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 4 ապրիլ 1972 թ.

**ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ՌՈԲԵՐՏ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Ի., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-200, ул. Кармир банаки, № 15, почт. инд. 375200.

***Հասցեն՝ Երևան—200, Կարմիր բանակի փողոց, № 15, փոստային ինդեքս՝ 375200։***
***Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։***

**ՎՖ 06413: Պատվեր 372: Տպաքանակ՝ 76100: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 6/IV 1972 թ.:**

**ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:**




# ԳԱՐՈՒՆ

Առաջին անգամ տեսա,
    թե ինչպես
Բողբոջը պայթեց
Ու իր կանաչ լեզուն
    Ինձ ցույց տվեց:
Առաջին անգամ նկատեցի,
Բողբոջը ծաղկել է,
Ու ես նստել եմ
Այդ փոքրիկ ծաղիկների վրա,
Թեև պաշտում եմ ծաղիկները:
Առաջին անգամ, ճակում
Տեսա մի ամբողջ աշխարհ.
Արև, երկինք, ծառեր ու մի աղջիկ
Եվ ափսոսացի, որ շատ անգամ եմ
Քանդել այդ գեղեցիկ աշխարհը:
Ու առաջին անգամ վզացի,
    Որ կարմրում եմ
Կարծես նրանից, որ
Նկատեցի այս հասարակ բաները
Ու վզացի, որ գարուն է
Թեև թվում էր, թե տեսել եմ
    Տասներեք գարուն:

*ՎԱՐԴՈՒՀԻ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*Երևանի № 123 դպրոցի*
*8-րդ դաս. աշ.*